

# ՃԱՄԲԱՐՈՒՄ

ՆԱԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Երկնի արծաթ կամարում
Լուսնի ժպիտն է մարում,
Արև չկա, բայց արդեն -
Լուսաբաց է ճամբարում:

Ժայռը ձորից ամպերի
Քարավանն է վտարում,
Որ ժպիտով զարդարվի
Լուսաբացը ճամբարում:

Կարմիր կակաչն ու մորին,
Թշիկներին ալ արյուն,
Շշնջում են սեզերին՝
Լուսաբաց է ճամբարում:

Շեփորների գիլ կանչին
Ձայնակցում է ջինջ առուն,
Ի՞նչ համերգով է գալիս
Լուսաբացը ճամբարում:

Չի մոռանա բնության
Լույսն ու ժպիտն աշխարհում՝
Ով տեսել է մի անգամ
Լուսաբացը ճամբարում:

Նկ. ԽԱՉԱՏՈՒՐ ԴՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ

**1928** թվականին էր: Ղարաքիլիսայի (այժմ՝ Կիրովական) պիոներական ճամբարը գտնվում էր Վարդանլու (հետագայում՝ Խնձորուտ) գյուղից ոչ հեռու, անտառի կանաչ բացատում: Աջ կողմում՝ մեր, ձախում՝ Վրաստանի պիոներական ճամբարն էր: Երկու ճամբարների միջև ընկած էր Դիլիջան տանող խճուղին և ձորը, որի սակավաջուր գետի մեղմիկ խոխոջը միանում է թռչունների ծլվլոցին ու ծառերի տերևների խշշոցին:

Կեսօրյա հանգստի ժամն էր, երբ հնչեց տագնապի ազդանշանը: Իսկույն վազեցինք դեպի շտաբի վրանը, ուր արդեն խումբ-խումբ հավաքվում էին պիոներները:

— Ի՞նչ է պատահել, ի՞նչ է պատահել,— անհանգիստ հարցնում էին հավաքվածները:

Վերջապես շտաբի վրանից դուրս եկավ ճամբարի պետ Պետրոս Մելքոնյանը՝ հաղթանդամ, առնական դեմքով այն հին պիոներ-աշխատողը, որը հետագայում երկար տարիներ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտորն էր: Երեք օր էր, որ նա բացակայում էր ճամբարից, գործով Երևան էր գնացել: Մեզ շատ զարմանալի ու տարօրինակ թվաց այդ պահին նրա հանգստությունը, նույնիսկ ուրախ ժպիտը: Սովորաբար տագնապի պահին ընկեր Պետրոսը դառնում էր անճանաչելի խիստ: Նա հայտնեց, որ Թիֆլիսից Ղարաքիլիսա է ժամանում Մաքսիմ Գորկին: Այնտեղից նա ու նրան ուղեկցողները ավտոմեքենաներով կմեկնեն Դիլիջան: Ճանապարհին կանգ կառնեն Դիլիջանում և Ծաղկաձորում, այցելելու են պիոներական ճամբարները...

— Իսկ մեր ճամբարը չի՞ գալու,— ձայնեց թըմբկահար Արտիկը և զայրույթից ուժեղ հարվածեց թըմբուկին:

— Ինչպե՞ս թե չի գալու,— բորբոքվեց օղակավար Արշալույսը,— մենք չենք թողնի, որ անցնի...

— Չե՞նք թողնի, չե՞նք թողնի,— ձայնեցին ամեն կողմից:

Սրապը, որ իր հեռագրիչ ավագ եղբորից սովորել էր Մորզեի այբուբենը, կանգնեց մի կոճղի վրա, ամեն ձեռքին մի կարմիր վզկապ, և սկսեց հաղորդել ձորի մյուս կողմում գտնվող Վրաստանի պիոներական ճամբարին, որ շուտով այստեղով անցնելու է Մաքսիմ Գորկին: Դուրս եկեք նրան դիմավորելու: Վրաստանի ճամբարային դրոշակի մոտ կանգնած հերթապահ պիոները նույնկերպ պատասխանեց, որ անթել հեռագիրն ընդունված է, անմիջապես տեղյակ կպահի ճամբարի պետին:

— Դե որ այդպես է,— ցնծությամբ բացականչեց ընկեր Պետրոսը,— իմ ետևի՛ց, շո՛ւտ...

Մինչև գոտկատեղը մերկ, ոտաբոբիկ, տղաները սլացան ճամբարի պետի ետևից, նույնիսկ ոչ մեկը

# ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻՆ ՓԱՄԲԱԿԻ ՃԱՄԲԱՐՈՒՄ

չպատասխանեց աղջիկների այն հարցին, թե հապա մենք ինչպե՞ս տեսնենք Գորկուն: Տղաներն արագ անցան գետակը, սկսեցին բարձրանալ ձորն ի վեր:

Տղաների վրա խիստ զայրացած, նրանց հետևից ջուրը մտան աղջիկները: Քանի որ ավտոմեքենաները չպետք է կանգնեին մեզ մոտ, սրընթաց պիտի անցնեին, ընկեր Պետրոսը մեզ հանձնարարեց աղջիկների բերած ծաղկեփնջերը նետել ավտոմեքենաները և «ուռա՜» բացականչել: Բոլորս սրտատրոփ սպասում էինք հանդիպման պահին: Ինչպես մեր, այնպես էլ Վրաստանի ճամբարի ղեկավարները առաջարկում էին երգել, պարել, մինչև երազած հանդիպումը: Մի քանի աղջիկներ նույնիսկ սկսեցին երգել, բայց նրանց արձագանքող չեղավ: Բոլորս լարված հետաքրքրությամբ նայում էինք անտառի կողմը և սպասում ավտոմեքենաների երևալուն:

Փողհար Անդրանիկը հանկարծ քաշեց ձեռքիցս և ականջիս փսփսաց.

— Հենց որ ավտոմեքենաները մոտենան, օղակավարի ազդանշանով փռվենք խճուղու վրա և կտրենք ճանապարհը: Հասկացա՞ր:

Ես գլուխս դրականորեն շարժեցի:

— Ի՞նչ ես մոլորվել,— գոռաց Անդրանիկը,— փոխանցի՛ր կարգադրությունը:

Հենց որ սաղարթախիտ ծառերի միջից երևացին ավտոմեքենաները, մեր օղակավարը բացականչեց.

— Պառկե՛լ, շո՛ւտ...

Տղաները մի մարդու նման փռվեցին ճամփի վրա: Մեր օրինակին հետևեցին նաև վրացի տղաները: Ավտոմեքենաները հոնդալով եկան, բայց ստիպված էին կանգ առնել: Մաքսիմ Գորկին իր երկար հասակով կանգնեց ավտոմեքենայի մեջ, ապա իրեն ուղեկցողների հետ իջավ: Մենք ուրախ ճիչերով շրջապատեցինք նրան, ծաղիկներ նվիրեցինք: Արտիկը Հայկանուշի ձեռքից վերցնելով նրա վզկապը, համարձակ մոտեցավ Գորկուն և կախվեց նրա վզից: Գորկին երկայն բեղերը հաճույքով սրբելով կռացավ կարճահասակ Արտիկի առաջ, իսկույն վզկապը կապեց նրա վզին և պիոներական պատվի առավ: Անհուն հրճվանքի ժպիտը դեմքին, Գորկին նույնպես պիոներական պատվի առավ, գովեց մեր հնարամտությունը և ասաց.

— Ա՜յ, իսկապես որ Հայաստանում եմ...

Նրան ուղեկցողները նույնպես խրախուսեցին մեզ.

— Կեցցե՛ն Ղարաքիլիսայի և Թիֆլիսի պիոներները:

Ոգևորված գովեստներից, մենք սկսեցինք բացականչել.

— Ընկեր Գորկի՜...



Մ. Գորկին հայ պիոներների հետ

— Կեցցե՛ մեր ճամբարի պատվավոր պիոներ ընկեր Գորկի՛ն:

Հայկանուշն ուրախությունից չգիտեր ինչ աներ, որ իր վզկապը հայտնվել էր մեծ գրողի պարանոցին. նա բացականչեց.

— Ա՜յ թե ինչպիսին է Մրրկահավը:

— Ընկեր Գորկի՛,— հուզմունքից դողդոջ ձայնով դիմեց մի սիրունատես վրացի տղա,— մենք ձեր անունը կրող պիոներական կոլեկտիվից ենք (այդպես էին կոչվում ջոկատները), մենք ուզում ենք նամակագրություն ունենալ ձեզ հետ:

— Իսկ մենք Փարիզկոմից ենք,— շտապեց հաղորդել Գայանեն:

Շուտով Գորկին և նրան ուղեկցողները մեզ հրաժեշտ տվին: Մենք նրանց ուղեկցեցինք ուրախ երգով ու բացականչություններով: Ավտոմեքենաները ոլորապտույտ ճամփով հեռացան, աներևացան ծառերից այն կողմ, բայց մենք դեռ երկա՜ր-երկար նայում էինք և երջանիկ հայացքով ուղեկցում թանկագին Գորկուն:

Այսպես ավարտվեց մեր հանդիպումը Մաքսիմ Գորկու հետ Փամբակի անտառում: Նույն օրը երեկոյան մեր ճամբարի խարույկի բոցերը երկինք հասան: Ավանդույթի համաձայն մեզ հյուր էին նաև Վրաստանի ճամբարականները: Հայ և վրացի պիոներները խարույկի շուրջը պատմում էին Գորկուց կարդացած գրքերի մասին: Մեկն արտասանեց «Մրրկահավի երգը», ես պատմեցի «Դանկոյի սիրտը», մի վրացի տղա պատմեց «Մակար Չուդրան»: Վերջում որոշեցինք երկու ճամբարների ուժերով բեմադրել «Հատակում» պիեսը:

Փամբակի անտառում շատ տարիներ առաջվա մեր այս հանդիպումը նրա մասնակից հին պիոներները երբեք, երբեք չեն մոռանա:

ՎԱԶԳԵՆ ԱՄԻՐԽԱՆՅԱՆ



եք: Նրան գուցե ոչ մի անգամ էլ չէք հանդիպել, բայց ժամերով նայել եք նրա գործերին, հիացել: Ձեզանից շատ-շատերն են եղել Էրեբունիում, զարմացել, թե ինչ ճարտար ձեռքեր ունեն այն վարպետները, որոնք նոր շունչ ու ոգի են հաղորդել քարերին: Ձեզանից շատ-շատերն են եղել Սունդուկյանի անվան թատրոնում և, անկասկած, միայն ներկայացումով չէ, որ հիացել եք: Ամբողջ շենքն է մի գեղեցիկ ներկայացում: Նաև վարպետ Գառնիկի մատների շնորհքն է կաթել այս նախշազարդ քարերին: Ձեզանից շատ-շատերն են տեսել Սարդարապատի ճակատամարտի հուշարձանը: Նայելով կոթողները գուցե դուք էլ ինձ նման մոռացել եք, որ այն կառուցվել է մեր օրերում, մեր աչքի առջև: Քարտաշ վարպետները քարին ըմբոստություն, անսանձ ցասում, հորդուն կյանք, հարատևելու կամք ու հավերժություն են պարգևել՝ ի հավերժացում նրանց,

# ՀՄՈՒՏ ՈՒ ԲԱՐՁՐԱՐՎԵՍՏ ՎԱՐՊԵՏԸ

— Վարպե՛տ, հիշո՞ւմ ես քո առաջին գործը:

— Հիշում եմ, մի գեղեցիկ քանդակ էր:

— Որտե՞ղ է հիմա:

Վարպետը լռում է, իսկ աղջիկը՝ Անուշը թաքցնելով ժպիտը, ասում է.

— Կատուն կերել է:

Հարցի պատասխանը, երևում է, որ լավ գիտեն վարպետի կինը, հինգ աղջիկն ու տղան, և զարմանքը մնում է միայն ինձ համար:

— Ինչպե՞ս:

— Պանրից էի պատրաստել.— հանգիստ պատասխանում է վարպետը:

— Իսկ հիմա որտե՞ղ է կատուն:

Մենք երկար ծիծաղում ենք: Ինձ թվում էր, նա քարի նման կոշտ ու կոպիտ պիտի լիներ, բայց ծիծաղը մատնեց նրա հոգու փխրունությունը: Իսկ երբ զրույցի ընթացքում վարպետը պարզեց ձեռքերը, ինձ թվաց, թե նրա մատների մեջ պահված քարեր կան՝ նրա կենսագրությունը: Թողած մեր հին մեծամեծ ու համբավավոր փորագրիչներին, անանուն հեղինակներին, ուզում եմ պատմել քարագործ վարպետ Գառնիկ Ամիրջանյանի մասին: Նա արժեքավոր ժառանգորդն է բոլոր այն հայտնի ու անհայտ քարակոփ ու քարախոս վարպետների, որոնք Հայաստանով մեկ քարե այգիներ են փռել՝ հավերժ հպարտության, հավերժ տխրության ու հավերժ հիշատակի...

Ես մինչ այդ ճանաչում էի փորագրիչ ու զարդանկարիչ վարպետին, բայց չգիտեի, որ... ճանաչում եմ: Ու հիմա, երբ փորձում եմ նաև ձեզ ծանոթացնել նրա հետ, մտածում եմ, որ ախր, դուք էլ եք ճանաչում, բայց ինձ նման դուք էլ չգիտեք, որ ճանաչում

ովքեր կարողացան իրենց ըմբոստ ոգով, ազատության ծարավով, արյան հնչեղությամբ, նոր կյանքի արշալույսին մի նոր Ավարայր երկնել... Վարպետ Գառնիկի քարերգությունը կա նաև այստեղ: Ձեզանից շատ-շատերն են ջուր խմել աղբյուր-հուշարձաններից: Թե մտածել եք՝ ով է այդ աղբյուրներից առաջինը ջուր խմել, մի՛ մտածեք: Վարպետ Գառնիկն է խմել, որովհետև ինքն է կառուցել: Ձեզանից շատ-շատերը գուցե և ապրում են այն տասնյակ գյուղերում, որտեղ մշակույթի նոր օջախներ կան: Վարպետը այնտեղ էլ իր բարի գործն է արել ու լուռ հեռացել:

Ձեզանից շատ-շատերը գուցե և ապրում են այն տասնյակ շենքերում, որի կամարներին ձեզ իր բարի ցանկություններն է գրել վարպետ Գառնիկը: Այո՛, վարպետը տասնյակ շենքերի է տվել շենք ու շնորհք, որոնք Երևանի սիրտն են այսօր և ապրում են նաև բանաստեղծների ու երգահանների գործերում: Ձեզանից շատ-շատերը երկյուղածությամբ, հպարտությամբ են նայել պատերազմում զոհված մարտիկների հիշատակը հավերժացնող կոթողներին, ուր իր սրտի խոսքը զարդաքանդակներով է արտահայտել վարպետ Գառնիկը...

Շարունակե՞մ այսպես, թվարկե՞մ բոլորը: Այնքան շատ են դրանք, որ հազիվ են տեղավորվում Հայաստան երկրում, այս հոդվածում ինչպե՞ս կտեղավորվեն: Շատ ճարտարապետներ են ցանկացել, որ իրենց նախագծած շենքի վրա աշխատի նա, որովհետև «վարպետ Գառնիկը սոսկ փորագրիչ չէ, ստեղծագործող-քանդակագործ-ճարտարապետ է, նա իր գործը հասցնում է կատարելության»: Նրա գործերի մեջ այնքան սեր ու նվիրում տեսան, որ շատ ճանաչված ճարտարապետներ նրան պարզապես ճարտարապետ ու գործ-





ընկեր կոչեցին, թեև ինքը իրեն հպարտությամբ քարտաշ էր անվանում: Իսկ ճարտարապետ կոչվելու կամ ճարտարապետների միության անդամ լինելու մասին նա երբեք չէր էլ մտածել: Ինքն էր, իր քարը, իր մուրճը, իր հատիչը, իր երգը: Ինքը չէր մտածել, ուրիշները, այդ թվում և ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանը, մտածեց և երաշխավորեց. «Երկար տարիներ Գառնիկ Ամիրջանյանը աշխատել է (և աշխատում է) որպես քանդակագործ-փորագրող հանրապետության բազմաթիվ ճարտարապետական նշանակալից կառուցվածքների վրա և ձեռք է բերել հմուտ ու բարձրարվեստ վարպետի համբավ: Համարում եմ միանգամայն արժանի Գ. Ամիրջանյանին լինելու ճարտարապետների միության անդամ»:

...Ծննդավայրը՝ Էջմիածին, Աղջաղալա: Երևանի տնտեսագիտական տեխնիկումն ավարտելուց հետո զգում է, որ իր աշխատանքի հասցեն միայն շինարարությունը կարող է լինել: Քարը նրան կանչում էր: Եվ նա գնաց... Քանդակագործուհի Այծեմնիկ Ուրարտուի մոտ: Ուրարտուի արվեստանոցը նրա համար դարձավ այն այբբենարանը, ուր սովորեց ծեփելու և ձուլելու արվեստը: Աշակերտեց նաև Արա Սարգսյանին: Պատերազմը նրա կենսագրությունը նույնպես հարստացրեց: Ապա սովորեց գեղարվեստական ինստիտուտում, երկրորդ կուրսից թողեց այն, որովհետև պատերազմը նոր էր ավարտվել և պետք էր շինհրապարակը դարձնել լսարան: Եվ էլ չկարողացավ բաժանվել քարից: Անհրաժեշտ համառություն և ծիրք կար, որպեսզի լիներ քարի վրա փորագրող: Եվ նկատեց, որ ձեռքերը իրեն տանում են: Նա գնաց իր ձեռքերի հետքերով: Իր ձեռքերը քանդակում էին նաև գիպսից, քարից, փայտից:

Եվ... քանդակները սկսեցին մատնել նրա տեղը: 1961 թ. Գառնիկ Ամիրջանյանը առաջին անգամ փայտից կերտած մոր ու կնոջ կիսանդրիներով մասնակցեց Մոսկվայում բացված ինքնուս ստեղծագործողների համամիութենական ցուցահանդեսին: Արժանացավ ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության դիպլոմին: Ամիրջանյանը հանրապետական ցուցահանդեսների մշտական մասնակիցներից է: Նրա մի շարք գործեր ցուցադրվում են ժողովրդական ստեղծագործության տուն-թանգարանում: Նա պարգևատրվել է մեդալներով ու դիպլոմներով:

Ես սեղմում եմ նրա արդար, ճարտար ձեռքերը, որոնք անդավաճանորեն նվիրված են քարի՜ն, քարի՜ն, քարի՜ն... Հմուտ ու բարձրարվեստ վարպետը միշտ արթնանում է արևի հետ: Եվ գնում է քարե երազանքները քարե իրականություն դարձնելու:

*ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*




# ՀՈՂԻ ԳԻՐՔԸ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Հողի գիրքը
Մենք ենք գրում,
Պարզ է, ինչով,
Ո՛չ գրիչով...
Օգնում են մեզ և դասերը.
Աշխատելիս երևում է,
Ով է մեր մեջ հողասերը:
Փորձի՛ր հապա,
Ահա՛ քեզ բահ,
Փորի՛ր ու տես,
Ո՞նց են շարվում
Մարգերն ուղիղ տողերի պես:
Բույսի մասին
Ուսուցիչը ինչ որ ասում,
Հետո տանում, ցույց է տալիս
Հողամասում:

Մի՛ զարմանա, որ մեր այգում
Դու կգտնես անգամ արմավ.
Հողամաս չէ,
Այլ գիտական փոքրիկ կենտրոն.
Եվ կոկոսյան ընկույզ ունենք,
Պատվաստ կիտրոն,
Հողամասի ամբողջ կեսը
Ծաղիկներ են,
Ի՜նչ ծաղիկներ՝ հրաշալիք,
Որ ծփում են մարգերի մեջ
Ալի՜ք, ալի՜ք...
Մեր այս փոքրիկ
Հողն ինչե՞ր է արդեն տվել...
Բայց կարո՞ղ եմ ողջը թվել.
Լավ է եկե՛ք,
Մեզ հյո՛ւր եկեք,
Ես տեսածիս կեսն եմ ասում,
Շատ ավելին դուք կտեսնեք
Մեր դպրոցի հողամասում:

*Թրգմ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*




# ԱՐԱՀԵՏՆԵՐ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Տայգաներում ճանապարհներ չկան: Տայգաները արահետներ ունեն: Նույն արահետներով են անցնում գազանները և մարդիկ: Տայգայի բնակիչը հեշտությամբ է որոշում, թե ինչ գազան է անցել արահետով իրենից առաջ, ում արահետն է այդ: Գազանն էլ իր հերթին, երևի զգում է մարդու անցնելը արահետով, ի՞նչ իմանաս:

Բացի մշտական արահետներից կան նաև ձմռան արահետներ: Ձմռան արահետներից ամենից ուշագրավը նապաստակների արահետներն են: Երբ ընկնում են սառնամանիքները, սնդիկի սյունը իջնում է մինչև մինուս հիսուն և ավելի ցածր աստիճանի, նապաստակներն այլևս չեն դիմանում ցրտին, չեն կարողանում անշարժ մնալ: Ողջ գիշեր, մինչև լուսաբաց վազում են իրենց թողած հետքերով, որպեսզի տաքանան, չսառչեն: Սովորաբար նրանք վազում են շրջան կատարելով, այդ շրջանները տարբեր են լինում՝ մեծ ու փոքր: Եթե չվազեն կսառչեն, իսկ սառչելը տայգայում մահ է: Մահը վազում է նրանց հետ, նրանց կողքից, նրանց ետևից: Վազում է կրնկակոխ մինչև լուսաբաց: Եթե նապաստակը թույլ է, հիվանդ կամ հոգնել է արդեն, դանդաղում է՝ մահն իսկույն վրա է հասնում և ամեն ինչ վերջանում է: Ցերեկը, որ միշտ էլ ավելի տաք է, քան գիշերը, նապաստակները հանգստանում են: Իսկ հաջորդ գիշերը կրկին մահվան առաջն ընկած փախչում են նրանից: Ես շատ եմ տեսել մահվանից փախչող, սառչող նապաստակներ: Երբեմն թվում է, թե խելագարվել է խեղճը: Նրանք այդ պահերին հնարամիտ են ու քաջ, կարծես երկչոտ նապաստակներ չեն:

Երբ ես որսի դուրս եկա, պարզկա գիշեր էր: Արևի ջերմաչափի սնդիկը շատ էր իջել: Տայգան կապտել էր ցրտից: Օդն անշարժ էր ու կարծր: Գիտեի, որ այդպիսի գիշերներին աղվեսները դուրս են գալիս նապաստակներ որսալու: Ուզում էի այդ գիշեր աղվես խփել: Նրանց մորթիների ամենալավ ժամանակն էր: Անցա Տանգարա լճակի սառույցի վրայով, մտա Սուտումանի կիրճը, քայլեցի դեպի Եվրաշկալա վտակի սառած հունը: Այստեղ աղվեսներ շատ էին լինում: Ձյան վրա, շուրջս, մանր ուլունքների նման շարված էին մկների, սկյուռների, կզաքիսների թողած հետքերը: Այնքան գեղեցիկ և այնքան բազմազան էին այդ հետքերը, որ չհիանալ նրանցով չէր կարելի: Քայլում էի, նրանց վրա դրոշմելով իմ ահագին ոտնահետքերը, որպես սարսափ և նշան այն բանի, թե այստեղից մարդ է անցել: Քայլում էի և հանկարծ ձյան վրա նկատեցի ձմռան ամենագեղեցիկ հետքերը: Հիշեցի մայրիկիս հեքիաթները մատնաչափ թզուկների մասին:

«Փոքրիկ ոտքերով, փոքրիկ ձեռքերով, մե՜ծ, մեծ գլխանի, գազաչափ մորուքով»... Մայրս այս հեքիաթը երգելով էր պատմում: Նայում եմ այդ հետքերին և ինձ թվում է, թե հենց նոր են այստեղով անցել մայրիկիս թզուկները՝ իրենց փոքրիկ, արծաթե դահուկների վրա: Դրանք ճերմակ կաքավների հետքերն էին: Գնում էի նրանց հետքերով, գնում էի և հանկարծ հետքերը կորան: Ո՞ւր են կաքավները, ի՞նչ եղան: Նրանք միայն կարող էին թռչել, և այդպիսով միայն կարող էին կորչել նրանց հետքերը: Բայց չեն թռել: Եթե թռած լինեին, ձյան վրա պարզ կնկատվեին թռիչքից առաջ կատարած վազքի հետքերը, որոնք շատ են տարբերվում սովորական քայլի հետքերից: Ի՞նչ եղան կաքավները: Եթե տայգայի բնակիչ չես, ոչինչ չես հասկանա: Ես գիտեի, թե ինչ եղան կաքավները՝ նրանք ձյան տակ էին մտել: Բայց այդ պահին իմ ուշադրությունը գրավեց այն, ինչի համար տայգա էի մտել գիշերվա կեսին: Բլրակի տակից խելագար արագությամբ անցավ սառչող նապաստակը: Նա վազում էր իր արահետով: Արահետը լավ էր տրորված, ուրեմն նապաստակը երկար էր վազել: Այստեղ պետք է սպասեի գորշավիզ աղվեսի հայտնվելուն: Այսպիսի արահետների մոտ է նստում աղվեսը և սպասում իր զոհին: Հենց նապաստակը մոտենում է, աղվեսը ցատկում է իր թաքստոցից, հարձակվում նապաստակի վրա ու բռնում: Մի հարմար տեղ նստեցի, համոզված լինելով, որ մոտակայքում պահված է նաև որսորդ աղվեսը:

Լուսինն իջնում է իր բարձունքից, մտնում է տայգայի մեջ, քաշվում է խորքը, խտանում են ձյան վրա ընկած կեչիների ստվերները, խառնվում իրար, ձուլվում են առանձին կեչիների ստվերները

մի մութ զանգվածի մեջ, սևանում, գորշանում է ճերմակ ձյունը, աղվեսին տեսնելը անհնարին է դառնում: Նստած սպասում եմ: Բլրակի ստորոտով նորից դեպի ինձ է սլանում սառչող նապաստակը:

Երբ նապաստակն անցավ, բարձրացա և արահետին զուգահեռ շարժվեցի դեպի Եվրաշկայա վըտակի հունը: Շատ չէի հեռացել, երբ նապաստակը կատարեց իր հերթական պտույտը և հենց այդ պահին, երբ հավասարվելու էր ինձ, մի աղեկտուր ճիչ արձակեց և այնպիսի մի թռիչք կատարեց դեպի ինձ, որ ես բնազդաբար ետ քաշվեցի՝ նրանից պաշտպանվելու համար, և հենց այդ վայրկյանին տեսա արահետի վրա հայտնված գազանին: Բայց այդ գազանը իմ սպասած գորշավիզ աղվեսը չէր: Լայներախ բևեռային գայլն էր: Նապաստակի խելագար թռիչքը մի պահ շփոթեցրեց ահարկու գազանին: Ես օգտվեցի դրանից, հրացանս բարձրացրեցի և ձմեռային լուռ տայգան արձագանքեց հրացանիս կրկնակի որոտին: Գայլն այդպես էլ ուշքի չեկավ, տապալվեց նապաստակի արահետի վրա: Երբ ամեն ինչ խաղաղվեց, հրացանս նորից լցրեցի ու դարան մտա: Ես չգիտեի, որ աղվեսները չեն սիրում գայլերին, խուսափում են նրանցից, եթե այստեղ գայլ է հայտնվել, աղվեսն այլևս չի լինի:

Նստած էի: Ժամանակն անցնում էր, լուսինն իջնում էր տայգայի ետևը: Ծառերի ստվերները խտացել, մթնեցրել էին տայգան, ոչինչ նշմարել չէր կարելի: Վեր կացա, որպեսզի Եվրաշկայա ավանը գնամ, որի կրակներն արդեն տեսնում էի կիրճի հատակին: Երբ անցնում էի բլրակի տակով, նորից տեսա նույն նապաստակին. նա դարձյալ մեծ արագությամբ հասավ արահետի այն հատվածին, որտեղ ընկած էր բևեռային գայլի անշնչացած մարմինը, մի ահավոր թռիչք կատարեց դիակի վրայով դեպի աջ, ապա նորից դեպի ձախ և հայտնվեց իր արահետի վրա: Նա մի պահ անգամ կանգնել չէր կարողանում:

Հեռացա նապաստակի արահետից: Ցուրտը սաստկանում էր: Շտապեցի Եվրաշկայա ավանը հասնել: Թեթև գլխապտույտ էի զգում: Քայլերս խառնվում էին: Կարծես շոգում էի արդեն: Լավ գիտեի տայգան և հասկանում էի, թե ի՞նչ էր նշանակում այդ: Սառչող մարդը խեղդվում է թթվածնի պակասից, իսկ խեղդվելու ժամանակ շոգում է, բռնում է և աշխատում է բացել կուրծքը, գլուխը... Բացում է՝ սառչում է անմիջապես և կտրած ծառի նման տապալվում է գետին: Ես այդ գիտեի, և եթե չհեռանայի տայգայից, ծածկի տակ չմտնեի, ամեն ինչ կվերջանար: Վազում էի: Երբ մոտեցա ավանին, ականջներս խշշում էին արդեն: Այդ պահին մի [illegible] լեռան գագաթից, մի գունատ աստղեր՝ կապույտ կրակով, ճոճվեց երկնքում կանթեղի նման: Այդ լույսն էր բացվում տայգայի վրա: Ես մտա ավանի ծայրում կանգնած որսորդական գերանակապ տընակը: Տնակում տաք էր, պառկեցի և անմիջապես քնեցի: Հոգնել էին ոտքերս, հոգնել էին ձեռքերս, հոգնել էր նաև գլուխս... Քնել էի ուզում, բայց այդ այն քունը չէր, որով պետք է ընդմիշտ քնեի: Սա հանգստի քուն էր, կորցրած ուժերս վերականգնելու քուն էր: Այն ավելի խորացավ, երբ որսորդական տնակը մտավ անծանոթ մի մարդ և քիչ հետո կրակ արեց:

Այստեղ՝ տայգայում իրար հանդիպող մարդիկ երբեք չեն հարցնում, թե ով է նա: Եթե հարցնես էլ, պատասխան չես ստանա: Խիստ, բայց ճշմարիտ օրենք է տայգայի այս դարավոր օրենքը՝ քանի դեռ մարդը քայլում է գազանների արահետներով: Այս մարդը որսորդ էր. այստեղ բոլորն էլ որսորդներ են:



Նա տեսել էր իմ հետքերը ձյան վրա, հասկացել էր, որ ես լավ դրության մեջ չեմ: Տեսել էր սպանված գայլին ճապաստակի արահետի վրա: Հասկացել էր, որ այդ ես եմ սպանել: Եկել էր իմ հետքերով, հասել էր տնակին, ներս մտնելուց առաջ զննել էր տնակի շրջակայքը՝ այդ նույնպես տայգայի օրենքն է: Ներս էր մտել, տեսել էր ինձ: Վերցրել էր հրացանս, միջից հանել փամփուշտները և հետո միայն կրակ էր արել: Կրակն արել էր իր և ինձ համար: Թեյ էր դրել, հանգստացել էր և գնալուց առաջ տնակում մի տուփ լուցկի էր թողել, չոր թեյ, մի կտոր հաց, կրակը մարել և հեռացել էր տնակից, առանց ինձ արթնացնելու: Փամփուշտներս և փամփշտակալս դրել էի տնակի ելուստաձև գերանի վրա:

Երբ նա մտավ տնակը, ես նկատեցի նրան և ձուլս փախավ: Ուշադիր հետևում էի նրա բոլոր շարժումներին, այս էլ տայգայի օրենքներից մեկն էր, գիտեի, որ նա կհեռանա առանց ինձ արթնացնելու: Երբ նա պատրաստվեց դուրս գալու, տախտակամածի ծայրին թողեց այն ամենը, ինչ պարտավոր էր թողնել (այդպիսին է տայգայի օրենքը). լուցկի, փամփուշտներս, թեյը և իր հետքերը ձյան վրա: Եթե ես նրան գտնել ցանկանայի, կգնայի նրա հետքերով: Տայգայում մարդը ամբողջությամբ հանձնվում է բնության օրենքներին: Այդ օրենքները բազմազան չեն, բայց խիստ են, նրանց խախտումը պատժվում է մահով: Ոչ ոք չի կրակի սառնամանիքից փախչող ճապաստակի վրա, չի խփի մայր բադին, սագին, եղջերուին, այստեղ խփում են միայն արուներին: Նույնիսկ մայր գայլին սպանել չի կարելի: Այստեղ չեն կրակում թռչունների երամներն առաջնորդող բադերի, սագերի վրա, որպեսզի երամը աղետի չենթարկվի, ճանապարհը չկորցնի: Այստեղ նույնիսկ գազաններ որոնելիս ննջողության չեն դիմում բնիկները: Արջի վրա դանակով են գնում, մարտի են բռնվում, հաղթողը ուժեղն է լինում, այստեղ ննջողությամբ չեն հաղթում: Հիվանդ գազաններին չեն խփում, երկար չեն հալածում որսին: Բնիկներն ասում են՝ հոգնած կենդանու միսը չեն ուտի, դառն է լինում և թունավոր: Եվ այդ ճիշտ է: Այստեղ, նույնիսկ անհարկի հետքեր չեն թողնում ձյան վրա, որպեսզի չանհանգստացնեն երկչոտ կենդանիներին: Այստեղ ոչ միայն սիրում են բնությունը, այլև պարտավոր են պաշտպանել, պարտավոր են սիրել, այլապես կպատժվեն:

Երբ մարդը հեռացավ տնակից, ես դուրս եկա, նայեցի նրա թողած հետքերին: Նա հանգիստ էր քայլել, չէր շտապել: Կասկած ու վախ չկար նրա սրտում՝ այդպես էին բնթերցվում նրա հետքերը:

Լույսը բոլորովին բացվեց: Սպիտակ կաքավների մի մեծ խումբ վայրէջք կատարեց Եվրաշկայա գետակի սառած հունի էզրին, այդ նշանակում էր՝ օրը տաքանում է: Հիմա արդեն, երևի ճապաստակները դուրս էին գալիս իրենց արահետներից, մըտնում ծպտյալ տեղերը՝ հանգստանալու: Ցուրտ էր դրսում, բայց այդքան ցրտությունն այստեղ տաք է համարվում: Քառասուն աստիճան ցրտի ժամանակ ես իմ երեխաներին հանում էի զբոսանքի: Այստեղ ձմեռը չեն սիրում, չեն ուրախանում առաջին ձյունով: Երկար է, չափազանց երկար է այստեղի ձմեռը, և իզուր չեն երգի այս տողերը.

**Կալի՛մա, Կալի՛մա, հրա՛շք երկրամաս՝**
**հավիտենական սառ.**
**Տասներկու ամիսդ ձմեռ է, մնացյալն՝ ամառ:**

Տուն հասա օրվա կեսին: Դատարկ վերադարձա, բայց լավ հանգստացած:

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԱՐԱԾՎԱԾ ՎԱՅՐԻ ՊՏՂԱՏՈՒՆԵՐԸ

## ՏԽԼԵՆԻ ԵՎ ԸՆԿՈՒԶԵՆԻ

Մեր անտառները հարուստ են տխլենիներով: Բացի վայրի տըխլենիներից, գոյություն ունեն նաև մի շարք մշակովի տեսակներ:

Թփեր, ավելի սակավ՝ ծառեր են 5—20 մետր բարձրությամբ: Տերևները պարզ են, հերթադիր և լայն: Ծաղիկները խմբված են կատվիկներով: Պտուղը միասերմ ընկույզ է, որը պարփակված է միաձուլված ծածկող տերևներից կազմված խողովականման կանաչ



պտղագավաթի մեջ: Սերմերը մեծ քանակությամբ սննդարար ճարպեր են պարունակում:

Տխլենին ունի դեկորատիվ մեծ նշանակություն: Այն կազմում է ենթանտառ, հանդիպում է անտառների եզրերին և բացատներում:

Տարածված է հյուսիսային Հայաստանում. Վայքում, Զանգեզուրում և մասամբ Սևանի ավազանում:

Մեր հանրապետության կանա

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԽՈՒԼՆ ԱՅՑԵԼԵՑ ԻՐ ՀԻՎԱՆԴ ՀԱՐԵՎԱՆԻՆ

ՋԱԼԱԼԵԴԴԻՆ ՌՈՒՄԻ

*(13-րդ դարի պարսիկ բանաստեղծ)*

«Անսիրտ մարդ ես դու,— խուլին ասացին.—
Դրկիցդ է հիվանդ՝ կարոտ քո այցին»:
Խուլը մտածեց. «Լա՜վ, ասենք գնամ,
Բայց նրա ասածն ինչպե՞ս հասկանամ:
Ի՞նչ ելք որոնեմ... Տերն ինքը գիտի,
Բայց մեկ է, նրան այցելեմ պիտի:
Միշտ է, խուլ եմ ես, բայց ոչ անասուն,
Որ գլխի չընկնեմ, թե ինչ է ասում:
«Ո՞նց ես»,— առաջին իմ հարցումն է դա.
«Է՜, կազդուրվում եմ»,— պատասխան կտա:
Ես էլ իմ հերթին՝ «Դե՛, դա շատ է լավ,
Բայց ի՞նչ ես կերել՝ մածո՞ւն, թե՞ փլավ:
Կե՛ր, սնունդը միշտ օգուտ է տալիս,
Բայց ո՞ր բժիշկն է քեզ այցի գալիս»:
Նա անուշուշտ կտա ինչ-որ մի անուն.
Կասեմ՝ «Նա գործն իր լավ է իմանում:
Թող օրհնյալ լինի ու դեռ ավելին,
Շուտով վերջ կտա նա քո ցավերին»:
Մտքում գրույցի թելերը կապեց
Ու հարևանի բակը շտապեց:
Ծպիտը դեմքին մտավ նրա տուն:
«Ո՞նց ես»,— հարցրեց նա հիվանդ մարդուն:
«Մեռնում եմ»,— տնքաց հիվանդը տխուր:
«Լա՜վ է»,— ժպտալով ասաց մարդը խուլ:
Հիվանդին ասես խփեց պաղ քամին.
«Ուրեմն սա է իմ ոխերիմ թշնամին»:
Խուլը հետևեց նրա շուրթերին,
Որ լրացնի պակասն ու թերին:
«Բայց ի՞նչ ես կերել»... Հիվանդը թե՝ Թույն:
«Կե՛ր, օգտակար է դա հիվանդ մարդուն:
Քեզ բժիշկներից ո՞րն է հետևում»:
«Իմ հոգեառն է դռան ետևում»:
Խուլը թե՝ «Հրճվի՛ր ու դեռ ավելին,
Շուտով վերջ կտա նա քո ցավերին»:
Խուլը հեռացավ հրճվանքը սրտում.
«Ես ամոքեցի այդ հիվանդ մարդուն»:
Սիրտը քնքշացավ ու լաց եղավ նա.
«Իր ամբողջ կյանքում ինձ չի մոռանա»:
Իսկ հիվանդն ասաց. «Անե՜ծք այդ մարդուն,
Նրա հոգու մեջ դժոխք է ու թույն»:
Խուլը գնում էր, հրճվում տակավին,
Նոր ցավ գումարած հիվանդի ցավին:

*Թարգմ. ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆԻ*

---

չապատման պրակտիկայում ընկուզենին նույնպես ունի իր ուրույն տեղը: Ծառ է՝ մինչև 30—40 մետր բարձրությամբ և մինչև 2 մետր տրամագծով: Լուսասեր է: Աճում է արագ: Տերևները և ծաղիկները հաճախ են տուժում ուշ գարնանային սառնամանիքներից:

Տերևները կենտ փետրաձև են, արտաթորող գեղձերով և եթերայուղի բավական սուր հոտով: Սերմերը հարուստ են դաբաղանյութերով և գտնվում են յուրատեսակ կեղևարնի՝ «գավաթի» մեջ, որը աշնանը պատռվում է և միջից



*Ընկուզենի*

դուրս են գալիս հասունացած սերմերը, որոնք հարուստ են սննդանյութերի արժեքավոր յուղերով: Քուսպից պատրաստում են բարձրորակ հալվա:

Բնափայտը շատ արժեքավոր է, օգտագործվում է կահույք և քանդակներ պատրաստելու համար:

Մեր հանրապետությունում կարելի է հանդիպել հյուսիսային Հայաստանում, Սևանի ավազանում, Արարատյան հարթավայրում, Վայքում և հատկապես Զանգեզուրում:

*ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*Հ. Բեկնազարյանի անվան Հայֆիլմ կինոստուդիան նկարահանել է մուլտիպլիկացիոն մի նոր կինոնկար՝ «Հեքիաթ Նաղաշի և լավաշի մասին», որի ռեժիսորն է Ստեփան Անդրանիկյանը, նկարիչը՝ Ալեքսանդր Գրիգորյանը, սցենարի հեղինակն է Աշոտ Մահրադյանը, երաժշտությունը գրել է կոմպոզիտոր Տիգրան Մանսուրյանը։*

# ՀԵՔԻԱԹ ՆԱՂԱՇԻ ԵՎ ԼԱՎԱՇԻ ՄԱՍԻՆ

Լինում են, չեն լինում, մայր ու որդի են լինում։

Հայրը զոհվում է պատերազմներից մեկում և նրանց մութ խրճիթում տիրում է անասելի թշվառությունը։

Նաղաշի մայրը սկսում է տնետուն գնալ, լավաշ թխել։ Առավոտից երեկո աշխատում է, ի՞նչ աշխատանք է այդ, գիտե՞ք։ Թոնիրը՝ հասարակ վառարան չէ։ Գետնի մեջ է, լայն ու խոր։ Կրակը՝ հատակում։ Լավաշն էլ հասարակ հաց չէ։ Խմորի մի գունդ են վերցնում, գրտնակում են, ձգում հատուկ բարձի վրա, հետո փակցնում թոնրի շեկբոց պշերին։ Մեկը մյուսի ետևից, մեկը մյուսի ետևից, խոր գլուխ տալով հողին, փակցնում են շուրջ-բոլորը։ Հետո նույն խոնարհությամբ հակվելով թոնրի վրա, բռնում են թխված լավաշի ծայրից ու դուրս հանում։ Հետո կողք-կողքի փռում, չորացնում են արևի տակ։ Դրանից հետո, լավաշը դիմանում է մի շաբաթ, մի ամիս, կես տարի... Գյուղում բավական է մեկը թոնիր վառի, հարևաններն շտապում են իրենց լավաշն էլ թխել այնտեղ, որովհետև Հայաստանում քիչ են անտառները, և ամեն ճյուղ ու շյուղ հաշվի մեջ է, գիտեն կրակի գինը։

Բոլորը սիրում են Նաղաշի մորը, որովհետև մաքուր և ճարտար ձեռքեր ունի։ Բայց նա ապրում է շատ խեղճ, այնքան խեղճ, որ բարուրաշորեր անգամ չունի երեխայի համար։ Երեխային փաթաթում է այն լավաշի մեջ, որ տուն է բերում իբրև իր օրվա աշխատանքի վարձ։

Երբ Նաղաշն սկսում է տոտիկ-տոտիկ քայլել, կրծում ծակում է իրեն բարուրած լավաշը, անց է կացնում վիզը, և լավաշը նրա համար հիմա էլ դառնում է շապիկ։

Այդպես ապրում են նրանք։ Տարին տարու փեշն է բռնում։ Շուտ է հասունանում Նաղաշը և այլևս մանկական խաղերից համ չի առնում։

Մի օր, ճաշին, նա հարցնում է.

— Մայրի՛կ, ինչո՞ւ հացի մեջ պանիր ու կանաչի չես փաթաթում։

— Է՜հ, տղա՛ս, ես իմ դարդերն եմ փաթաթում նրա մեջ։ Մի կերպ լավաշի հետ կուլ են գնում...

Հայոց երկրում տղաները շուտ են հասունանում։ Եվ Նաղաշը տեսնում է, թե ինչքան քիչ արտեր կան լեռան լանջին։ Ամեն արտը մի լավաշի չափ է։

Մի օր էլ նա ասում է մորը.

— Ուզում եմ գնամ՝ բախտ փնտրեմ...

Մայրը չի ընդդիմանում, որդու համար ճանապարհի պատրաստություն է տեսնում և որպես օրհնություն նրա խուրջինի մեջ է դնում մի լավաշ։

Եվ գնում է Նաղաշը, անցնում գետ ու գետակ, լեռ ու բլրակ։ Հասնում է մի աղբյուրի։ Այստեղ ոչխարի հոտ է արածում։ Հովիվն էլ սրինգ է ածում։

— Բարև՛, ճամփո՛րդ մարդ,— ասում է հովիվը։— Ո՞ւր բարով...

— Բախտի ետևից։

— Իսկ պե՞տք է գնալ բախտի ետևից։ Ամեն







մարդու բախտը իր հետ է: Իմ բախտն էլ տես, իմ առջևում է, իմ ոչխարներն են:

Նաղաշը նստում է խոտի վրա, հանում լավաշը: Հովիվն էլ պանիր է հանում... Հացն ու պանիրն ուտում են, վրայից էլ խմում են աղբյուրի ջուրը: Հետո Նաղաշը վեր է կենում և ասում.

— Քո բախտը ծանր է քարշ գալիս, իսկ իմը ո՞վ գիտե՝ որտե՞ղ է...

Եվ ուզում է շալակել խուրջինը: Մեկ էլ տեսնում է խոտի վրա, այնտեղ, ուր հաց կերան, դրված է լավաշը՝ ձեռք չտված, լրիվ, թարմ...

Նախաճաշի ժամանակ մայրական հացի կտորը մեծացել, նորից մի ամբողջ լավաշ էր դարձել:

Սկզբում Նաղաշն իր աչքերին չի հավատում, հետո վերցնում, խուրջինի մեջ է դնում լավաշը:

— Տղա՛, քո բախտն ափիդ մեջ է: Էլ ո՞ւր ես գընում,— ասում է զարմացած հովիվը:

Նաղաշը չի լսում: Գնում է: Անփորձ էր, շտապում էր բախտի ետևից:

Նրա ճամփան ձգվում է անապատներով:

Գնո՜ւմ է, գնո՜ւմ: Շատ է գնում թե քիչ, ինքն ու ճամփան գիտեն, վերջապես նորից սովածանում է: Աշխատում է զսպել քաղցը, բայց չի դիմանում: Նըստում է ճամփեզրին, մի ծառի տակ, հանում է լավաշը, կիսում, մի կեսն ուտում է, մյուս կեսը, զարմանքով տեսնում, որ նորից մեծանում է ու ամբողջանում, դառնում է նախկինի չափ:

Նաղաշն ի՞նչ իմանար, որ միայն ինքը չէ զարմացողը:

Դու մի ասի քարի ետևում մի ավազակ թաքնված նայում է Նաղաշին. հետո դուրս է թռչում ծառի ետևից, նորից երկար նայում է, իբրև թե ուզում է հիշել նրա դեմքը, և ասում է.

— Այդ դո՞ւ ես գողացել իմ հացը, հա՞: Ե՛տ տուր,— և մերկացնում է սուրը...

Նաղաշը մի պահ վախից քարանում է: Բայց հետո իսկույն գտնում է իրեն.

— Կյանքում ես ո՛չ ոքից ոչինչ չեմ գողացել.— աղաղակում է նա:

— Դու դեռ համարձակվում ես ծպտո՞ւն հանել...— Եվ ավազակը հարձակվում է նրա վրա:

Նաղաշը ուզում է լավաշը թաքցնել խուրջինում, բայց լավաշը մնում է ձեռքին, դառնում վահան:

Ավազակը իր սրով խփում է, խփում, լավաշը չի թրատվում:

Բթանում է ավազակի սուրը, չռվում են ավազակի աչքերը: Քափ-քրտինք մտած՝ նա նստում է ճամփի փոշու մեջ և խնդրում.

— Ների՛ր, տղա՛ ջան, դժվար կյանքն է ինձ ավազակ դարձրել: Հացը ձեռքիդ տեսա՝ խելքս թռավ: Դրանով իմ ամբողջ ընտանիքը կկշտանա: Ինձ նվիրիր լավաշդ: Կամ արի՝ փոխանակենք: Ես իմ սուրը







քեզ կտամ, դու քո վահանը տուր ինձ... Շտապի՛ր. քանի միտքս չեմ փոխել...

Նաղաշը խղճում է ավազակին. կտրում է իր լավաշի կեսը, տալիս նրան, նրա երեխաների համար, և շարունակում իր ճանապարհը:

Գնում է, գնում և, երբ նորից նստում է, որ հաց ուտի, տեսնում է, որ լավաշը այս անգամ չի մեծացել ու ամբողջացել, կես լավաշն ինչպես կար, այնպես էլ մնացել է:

Նա հիշում է այն խոսքը, որ ասաց մայրը հրաժեշտ տալիս.

— Հացդ կիսիր միայն բարի՛ մարդկանց հետ, և քո բարին չի պակասի...

Նաղաշը չի ուտում այդ կեսը, թողնում է հետա-

գայի համար: Կուլ է տալիս թուքը և կարծես մի քիչ խելքի է գալիս:

Շարունակում է գնալ:

Գնո՜ւմ է, գնում, մի օր էլ տեսնում է մի ծերուկ է նստած խաչմերուկում, ծառի տակ:

— Ո՞վ ես, բարի՛ մարդ: Ո՞ւր ես գնում,— հարցնում է ծերունին:

— Ես Նաղաշն եմ, պապի՛կ: Գնում եմ իմ բախտի ետևից:

— Ես էլ ջահել ժամանակ բախտ գտնելու համար շատ ճամփաներ եմ մաշել... Իսկ երբ հասակս առա և կուրացա, հասկացա, որ բախտը մի կտոր հաց է հայրենի երկրում... Ուտելու բան չունե՞ս, որդի՛...

Նաղաշը խղճում է ծերունուն, մեկնում է նրան մայրական հացի մնացած կեսը և ասում.

— Առաջ կախարդական էր, չէր պակասում...

Ծերունին համբուրում է լավաշը, տանում աչքերին և հանկարծ. օ՜ հրաշք, բացվում են նրա աչքերը:

Նա արագ-արագ ուտում է հացի մինչև վերջին փշրանքը: Հետո ասում է Նաղաշին.

— Քո հացը, որդի՛, իրոք կախարդական էր... բայց կորցրել էր իր ուժը, որովհետև նրա արժեքը չես իմացել... Քրտինքովդ չես շահել: Լսի՛ր ծերունուս. վերադարձի՛ր քո տունը և սովորիր ցա՜նքս անել... Բախտը, որդի՛, միայն հայրենի՛ հողում է անում, հայրենի՛...

Նաղաշը լսում է ծերունու խոսքը, ետ է դառնում...

Բարի մարդիկ չեն թողնում, որ նա քաղցից մահանա: Մի գիշեր, երբ մի օրվա ճամփա էր մնացել մինչև հայրենի գյուղը, նա դատարկ խուրջինը դրած գլխի տակ՝ քնում է ճանապարհի եզրին... Եվ երազ է տեսնում. իբրև ինքը քնած է ցորենի հասած մի հասկի վրա: Տարուբերվում է հասկը և օ՞րորում Նաղաշին: Նաղաշն այնպես է իջնում հասկից, ասես մի մեծ ծառից է իջնում, և քայլում է արտի միջով, ինչպես անտառում են քայլում: Իսկ հասկերից ոսկե հատիկներ են ընկնում հողին: Մի հատիկը հազիվ է տեղավորվում խուրջինի մեջ:

Արևն արթնացնում է Նաղաշին, և երազը ցնդում է վաղորդյան շողերի մեջ: Նա ոտքի է ցատկում և համարյա վազելով գնում հայրենի գյուղի ուղղությամբ:

Մտնում է տուն, համբուրում մորը, գտնում է հորից մնացած բահն ու բրիչը և գնում դեպի հեռավոր լեռը: Քարերից մաքրում է իրենց լավաշաչափ հողը, և այնտեղ, ուր ընկնում է նրա քրտինքի կաթիլը, ծլում է մի բարձր հասկ, ամեն մի հատիկը խուրջինի մեծությամբ:

Կալսում են ցորենը, աղում, և մայրը թխում է մի մե՜ծ, շատ մե՜ծ լավաշ: Եվ ասում է որդուն.

— Ա՛ռ, տղա՛ս, տար հյուրասիրի՛ր մարդկանց: Թող ամեն մարդ մի կտոր պոկի: Չվախենա՜ս, հացդ չի՛ պակասի...

Եվ հացը չի պակասում:

Այդ օրվանից Նաղաշը բաց-բրտինք մտած աշխատում է, և կարիքն ընդմիշտ հեռանում է նրանց տանից...





Ան և Բեն ապրում էին սրանից 40000 տարի առաջ: Այն ժամանակ մեր մոլորակի վրա քաղաքներ չկային, հետևապես՝ նաև քաղաքակիրթ մարդիկ և քաղաքակրթություն: Նրանք անտառային կենդանիների մորթիներից կարված զգեստներ էին հագել: Մեր օրերի շատ մայրիկներ իրենց երջանիկ կզգային, եթե այդպիսի մորթիներից օձիքներ, գլխարկներ, վերարկուի փեշեր ունենային:

Տղաների աչքերն այդ օրը ոգևորությունից փայլում էին: Մեծահասակները երկու օր առաջ մի քարանձավից վտարել էին նրա վաղեմի բնակչին՝ վիթխարի արջին ու այժմ հարմարեցնում էին այն իրենց բնակության համար: Քարանձավ էին բերում կոճղեր, մեծ ու հարթ քարեր, մորթիներ: Անձավի խորքում խարույկ էին վառել ու աչքեր կուրացնող նրա ծուխը հալածում էր այս ու այն կողմ փախչող չղջիկներին: Ցեղի առաջնորդ ծերունիները երիտասարդներին դիմելով ասում էին, որ նրանք հիմա շա՜տ ավելի լավ են ապրում. բան ապրել են իրենք: Այսպես թե այնպես, կյանքը առաջադիմում էր:

Ան և Բեն մտածում էին մի անսովոր բան անել: Հանկարծ Անն նկատեց քարանձավի մուտքի երկար, հարթ պատը, որ լուսավորված էր խարույկի ցոլքերով: Նա ասաց Բենին.

— Նայի՛ր, ի՞նչ լավ պատ է:



# ԶԱՐՄԱՆԱԼԻ ՊԱՏԿԵՐԸ

*ՎԱՀՐԱՄ ԽԱԹԻԿՅԱՆ*

*Նկ. ԱՆԱՏՈԼԻ ՊԱՊԱՆՅԱՆԻ*

— Հետո՞ ինչ,— զարմացավ Բեն։

— Նրա վրա դեռ ոչ ոք ոչինչ չի նկարել։

Բեն անմիջապես հասկացավ իր ընկերոջը։ Տխուր այդ ժամանակներում երեխաները թուղթ ու մատիտ չէին կարող ունենալ։ Դրանք պետք է հորինվեին հազարամյակներ հետո։ Հարթ ժայռերի պատերի վրա նկարում էին մեծահասակները։ Նրանք միշտ նկարում էին միևնույն բաները՝ եղջերուներ ու քարայծեր, արջեր ու բիզոններ. որսի տեսարաններ։ Դա նրանց առօրյա կյանքն էր. ամեն օր էին որսի գնում, հանդիպում միևնույն կենդանիներին, ու նկարելու պահանջ ունենալիս նկարում էին նույնը։ Հին քարանձավի պատերն արդեն ամբողջովին ծածկվել էին այդ տաղտկալի նկարներով։ Ան և Բեն նկարում էին ճիպոտով՝ գետնին, որոնք սակայն շուտով ջնջվում էին։ Նրանք դեռ ոչ մի քարանձավում հարթ պատի թեկուզ մի փոքր ազատ կտոր չէին գտել, որի վրա նկարել կարողանային։ Դրա համար էլ այդ պատը նրանց շատ ուրախացրեց։

Բայց ի՞նչ նկարել։ Դուք, երբ մատիտների նոր տուփ եք նվեր ստանում, անմիջապես ցանկանում եք նկարել ձեր տեսած բոլոր հետաքրքիր բաները։ Ուզում եք նկարել շներ, ծխնելույզներ. ավտոմեքենաներ, ինքնաթիռներ և իհարկե՝ արև ու լուսին։ Ան և Բեն թվարկվածից միայն վերջին երկուսն էին տեսել։ Նրանք նաև ծառեր էին տեսել, որոնցից վախենում էին, որովհետև ծառերը գիշերները սարսափելի ձայներ էին հանում՝ շառաչում էին, ճռնչում, բուի պես կանչում։

— Արի լուսի՛ն նկարենք,— անվստահորեն ասաց Բեն։

Լուսինը խարույկի բոցերից հոգնած նրանց աչքերին քուն էր բերում։ Լուսինը խաղում էր ամպերի հետ ու զարմանահրաշ պատկերներ ստեղծում։ Բայց նրանք ամեն ինչից վախեցող, նախնադարյան երեխաներ էին։ Երբեմն լուսնից էլ էին վախենում։ Երբեմն նրանց թվում էր. թե լուսինը հանկարծ վայր կընկնի, ինչպես հաճախ աստղերն են ընկնում։

— Արի այնպե՛ս անենք, որ լուսինը ցած ընկնելու դեպքում չկոտրվի,— առաջարկեց Ան։

Եվ նրանք լուսնի տակ նկարեցին ճիպոտներ, որ լուսինը, եթե ընկնի, փափուկ հենվի գետնին։ Դա նրանք մեծերից էին սովորել, որոնք այդպիսի սուր ճիպոտներ էին տնկում գազաններ որսալու համար փորված խոր փոսերի հատակին, որպեսզի այդ ճիպոտները խրվեին փոսի մեջ ընկնող գազանների կողերը։

— Արի խարո՛ւյկ նկարենք,— ասաց Բեն։ Նա շատ էր սիրում. երբ իրենց ցեղը որսի էր գնում հեռավոր վայրեր ու այնտեղ խարույկ վառում դրսում։ Բաց երկնքի տակ ծուխը աչքեր չէր կսկծացնում. ու նա սիրում էր դիտել, թե ինչպես է խարույկի կապույտ ծուխը բարձրանում, հասնում լուսնին։

— Նկարենք,— ուրախացավ Ան։ Եվ նրանք նաև խարույկ նկարեցին, որի ծուխը սփռվում էր չորս կողմ։

Դրանից հետո նրանք շատ ուրիշ բաներ էլ նկարեցին։ Նկարեցին չար ոգիներ, որոնցով մեծերը վախեցնում էին իրենց։ Այդպիսի ոգիներն իբրև թե սուսուփուս մոտենում են երեխաներին, հագցնում իրենց սուր պոզերին ու փախցնում։ Նկարեցին այնքա՜ն, մինչև հարթ պատը ամբողջովին ծածկվեց նկարներով։ Մի քանի օր հետո, երբ մեծերն ավարտեցին քարանձավի բնակեցումն ու թեթևացած շունչ քաշեցին, նկատեցին քարանձավի մուտքի պատերի նկարներն ու վախեցան։ Այո՛, այո՛, վախեցան, որովհետև նրանք նախնադարյան մեծահասակներ էին ու հավատում էին այն չար ոգիների գո-



## ՀԱՐՈՒՍՏ ՏԻԿԻՆՆԵՐԸ ԵՎ ՊԱՌԱՎԸ

*(Հնդկական զրույց)*

Երեք հարուստ տիկիններ նստել էին գետափին ու զրուցում էին: Խոսք բացվեց ձեռքերի մասին:

— Տեսե՛ք, ի՜նչ սպիտակ ու գեղեցիկ ձեռքեր ունեմ,— ասաց մեկը:

— Իմ ձեռքերն ավելի գեղեցիկ են,— ասաց մյուսը:

— Ամենագեղեցիկը իմ ձեռքերն են,— ասաց երրորդ կինը:

Մի պառավ կին ձեռնափայտին հենված մոտեցավ նրանց.

— Գեղեցի՛կ տիկիններ,— ասաց նա,— ես ծեր եմ, աշխատել չեմ կարողանում և հիմա շատ քաղցած եմ, ինձ ուտելու մի բա՛ն տվեք:

Տիկինները նրան ուտելու ոչինչ չտվեցին, իսկ նրանցից մեկը հարցրեց.

— Ասա՛ մեզ, ո՞ւմ ձեռքերն են ավելի գեղեցիկ:

— Ես ձեզ հետո կպատասխանեմ,— ասաց ծեր կինը և հեռացավ:

Գետափին, քիչ այն կողմ նստած էր մի գեղջկուհի: Նա աղքատ էր, ու նրա ձեռքերը կոշտացել էին ծանր աշխատանքից:

— Ես քաղցած եմ, ինձ ուտելու որևէ բա՛ն տուր,— խնդրեց ծեր կինը: Գեղջկուհին բացեց պարկը, հանեց հացի կտորը ու կեսը տվեց նրան: Ծեր կինը կերավ, ջուր խմեց, հետո բռնեց աղքատ կնոջ ձեռքը և տարավ հարուստ կանանց մոտ.

— Հիմա ես ձեզ կասեմ, թե ում ձեռքերն են ամենագեղեցիկը: Այս աղքատ կնոջ ձեռքերը կոշտացել են աշխատանքից, բայց նրանք ավելի գեղեցիկ են, քան ձեր սպիտակ ձեռքերը, որոնք աշխատել չգիտեն:

*Անգլ. թարգմ. ՏԱՐԻԵԼ ԿՆՃԱԶՅԱՆԻ*

յությանը, որոնցով վախեցնում էին իրենց երեխաներին: Նրանք այդ պատկերները համարեցին գերբնական, դարձրեցին պաշտամունքի առարկա ու սկսեցին որսից բաժին հանել դրանց, որպեսզի չար ոգիներն իրենց չըպատժեն: Ան ու Բեն թաքուն վերցնում էին արջի կամ քարայծի մսի այդ համեղ կտորները, տանում հեռու, խորովում ուտում: Նրանք հասկացել էին, որ չար ոգիներ անգամ եթե կան, այնքան էլ չար չեն, ու երբ մեծացան, ավելի համարձակ դարձան, քան իրենց ծնողները, ավելի հեռուներն էին գնում ու ավելի շատ բաներ իմանում աշխարհի մասին:

Կյանքը դանդաղ առաջ էր գնում:

* * *

Շատ հազարամյակնե՛ր հետո խոր ձորի ուղիղ պռնկին մի ուղղաթիռ իջավ: Նրա միջից դուրս եկան մորուքավոր ու անմորուք, բահերով, քլունգներով ու լուսանկարչական ապարատներով զինված մարդիկ: Նրանք պարանների օգնությամբ իջան քարանձավ: Դրանք հնագետներ էին: Շատ էին ցանկանում իմանալ, թե շա՜տ հնում ինչպես են ապրել քարանձավաբնակ մարդիկ: Ինչպիսի՜ երկյուղածությամբ ու զգուշությամբ էին հնագետները քարանձավի հողի միջից պեղում, հանում խարույկներից մնացած ածխակտորները, գազանների ոսկորները, քարե ու ոսկրե կոպիտ առարկաները:

Եվ ամենակարևորը՝ քարանձավի մուտքի պատին նրանք տեսան Այի և Բեի նկարածները: Հնագետները սովոր էին քարանձավներում հանդիպել որսի տեսարանների միայն, ու խիստ զարմացան: Ահա մի գունդ, որի հետևից երեք գծեր են տարված: Ի՞նչ է դա: Ինչքա՜ն նման է արբանյակի: Դե իհարկե, արբանյակ է,— մտածեցին նրանք,— այդ գծերն էլ անտենաներ են: Նոր է մեկնաթռիչք վերցրել և ծուխ ու կրակ է ժայթքում: Իսկ այս ի՞նչ տարօրինակ, պոզավոր մարդիկ են: Պարզ է, տիեզերագնացներ են: Հնագետները ոգևորված արտանկարեցին, լուսանկարեցին այդ ամենը ու, վերադառնալով, իրենց եզրակացությունների հետ հրապարակեցին թերթերում: Աղմուկ բարձրացավ: Աշխարհի տարբեր կողմերից եկան գիտնականներ, քննեցին նկարները, վերծանեցին անհասկանալի տեղերը (իրականում պատկերները շատ լավ էին պահպանված ու նրանք միայն լրացումներ կատարեցին) ու հաստատեցին, որ այդտեղ պատկերված է երկրի բնակչության առաջին հանդիպումը աներկրյա քաղաքակրթության ներկայացուցիչների հետ:

Ահա թե ինչպես մոլորվեցին գիտնականները:

Բայց սա մի եզակի դեպք է:

Անշուշտ այլ մոլորակներից մարդիկ եկել են Երկիր ու էլի կգան, գուցե նույնիսկ մեր նախնիները նրանց տեսել են ու խիկայպես նկարել: Եվ գուցե վաղը ձեզնից որևէ մեկը տիեզերագնացների իսկական նկարներ կգտնի:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*

Պրուսիայի Մեծն Ֆրեդերիկ թագավորը (1712—1786), յուրաքանչյուր անգամ իր պահակախմբում մի նոր զինվոր տեսնելիս, մոտենում և երեք հարցով դիմում էր նրան.

— Ձեր տարի՞քը, ինչքա՞ն ժամանակ է, որ ծառայում եք իմ պահակախմբում, գո՞հ եք սննդից և աշխատավարձից:

Մի անգամ ֆրանսիացի երիտասարդ մի զինվոր



ընդունվում է թագավորի մոտ՝ ծառայության: Պահակախմբի պետը, տեսնելով, որ նորեկը լրիվ անծանոթ է գերմաներենին, խորհուրդ է տալիս նրան՝ գերմաներեն սովորել թագավորին տալիք պատասխանները: Եվ երիտասարդ զինվորը իր ընկերների օգնությամբ անընդհատ կրկնում է.

— Քսան տարեկան, մեկ ամիս, երկուսից էլ:

Մի առավոտ, համաձայն իր սովորության, թագավորը մոտենում է անծանոթ զինվորին և սկսում հարցուփորձ անել: Դժբախտաբար, այս անգամ նա սկսում է երկրորդ հարցից.

— Ինչքա՞ն ժամանակ է, որ ծառայում եք իմ պահակախմբում:

— Քսան տարի, տե՛ր իմ,— պատասխանում է զինվորը:

Խիստ զարմացած՝ թագավորը շարունակում է.

— Բայց, դուք քանի՞ տարեկան եք:

— Մեկ ամիս, տե՛ր իմ:

Էլ ավելի ապշած թագավորը բացականչում է.

— Ըստ երևույթին մեր երկուսից մեկը խելագար է:

— Երկուսս էլ,— շատ հանգիստ պատասխանում է զինվորը:



Գեներալ Ռոմենիլը, որը Ռուսաստանի դեմ Նապոլեոնի մղած մարտերից մեկում կորցրել էր մեկ ոտքը, 1814 թվին ղեկավարում էր Փարիզի մոտ գտնվող Վենսան ամրոցի պաշտպանությունը: Երբ դաշնակից բանակների հրամանատարը նրանից պահանջում է հանձնել ամրոցը, Ռոմենիլը պատասխանում է.



— Ես ամրոցը կհանձնեմ միայն այն դեպքում, եթե դուք վերադարձնեք իմ ոտքը:

*Թարգմ. ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԻ*



# ՊԱՊԻՍ ԳՅՈՒՂԸ

*ՎԱՉԱԳԱՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

Աստղառատ է պապիս գյուղը՝
Արևին մոտ, մտերիմ,
Եվ հյուրընկալ ծառ ու ճյուղը՝
Կապույտ հովը թևերին...

Ջրերն անուշ, ջրերը պաղ՝
Լեռան արցունք՝ ժայռաբուխ,
Թոնիրների ծուխը խաղաղ
Կածաններ են երկնամուղ...

Հովիտները՝ խորունկ հմայք,
Դաշտերը՝ գիրկ մայրական,
Եկե՛ք պապիս գյուղը գնանք,
Եկե՛ք գնանք Բյուրական...



Հրետանային զորամասը հասել էր Մոնղոլիա: Հայրենական պատերազմի վերջին օրերն էին, ու մենք օգնության էինք գնացել եղբայրական բանակին, արևելքում նույնպես խաղաղություն հաստատելու համար: Իսկ Մոնղոլիան անսահման տափաստանների երկիր է: Հարթավայրերը տարածված են հորիզոնից-հորիզոն: Այդ է պատճառը, որ ձին մոնղոլի համար ընկեր է, եղբայր, ամեն ինչ:

Եվ ահա մեր զորամասը Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության ազգային տոնի հյուրն է: Ներկայացումներ ենք դիտում, համերգներ լսում, սպորտային մրցումների ներկա լինում...

...Մեծ խմբով կանգնել ենք մարզադաշտում ու դիտում ենք հեծյալների մրցումը: Ահագին վրանի նմանվող ծածկի տակ նստել են մրցման հանձնաժողովի անդամները և սպասում են: Նրանց առջև մի երկար սեղան կա, որի վրա դրված են ուզբեկական փիալաների նման գավաթներ ու պուտուկներ:

Հանձնաժողովի անդամներն անհանգիստ են. անընդհատ վեր են կենում, ցույց տալիս տափաստանի հեռուն...

— Ինչո՞ւ են անհանգիստ, Արա՛մ,— դիմում եմ ընկերոջս:

Նա ուսերն է թոթվում:

Մեկ էլ հեռվից քառատրոփ սուրացող նժույգների դոփյուն լսվեց: Չոր գետինը դմբդմբաց: Մարզադաշտում հավաքված հազարավոր

# ՀԱՂԹԵՑ ՄԱՆՉՈՒԿԸ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

մարդկանց բարձրացրած ողջույններին խառնվեցին մեր ցնծագին բացականչությունները:

Մարզադաշտի ծայրին երևաց առաջին նժույգը: Բայց հեծյալը չէր երևում:

— Բա... ձին առանց հեծյալի՞,— շշնջացի ես:— Անգլուխ ձիավո՞ր է, ի՞նչ է:

Ընկերոջս խենթ հայացքը խեղդեց իմ փոթկոցը:

— Լա՛վ նայիր,— ատամների արանքից նետեց նա:

Նայեցի և տեսա. ցածրամարմին աշխետի մեջքին նստած էր մի փոքրիկ տղա՝ մոնղոլական գմբեթաձև գդակը գլխին, կեռքիթ երկարաճիտ կոշիկները ոտքերին:

— Սա... հինգ տարեկան հազիվ լինի,— ապշած ասացի ես:

— Բա ի՞նչ գիտեիր,— հպարտացավ ընկերս, կարծես թե իր զավակն էր հաղթողը:— Ընկե՛ր ջան, սրանց մոնղոլ կասեն... երեք տարեկան հասակից ձիու վրա են...

Ես անթարթ նայում էի փոքրիկ հեծյալին: Սա կարծես ձուլվել էր թամբին ու վարգում էր դեպի ժյուրիի երկար սեղանը: Մարզադաշտի աղմուկը չէր դադարում. գոռում-գոչյուն, ծիծաղ, ծափ...

Մանչուկի նժույգը դեռ դոփում էր գետինը, երբ իրար հետևից սեղանին մոտեցան մյուս մասնակիցները և շարվեցին: Հանձնաժողովի նախագահը մոտեցավ սահմանաձողին և մեծ գավաթը հրամցրեց հաղթողին: Թնդացին ծափերն ու հիացական գոչյունները:

— Գավաթի մեջ կումիս է, նայի՛ր:

Ես լարված նայեցի: Մանչուկը վերցրեց թասը, մի երկու կում խմեց ու մնացած կումիսը լցրեց նժույգի գլխին:

— Ընդունված կարգ է,— բացատրեց ընկերս:

Մանչուկի նժույգը փնչացրեց, ականջները թափ տվեց, իսկ ամբողջ ժողովուրդը քահ-քահ ծիծաղում էր, վանկարկում տղայի անունն ու ծափահարում:



Մի քանի տարի առաջ Ֆիջի արշիպելագի կղզիներից մեկում, գյուղացու բոստանում հրաշքներ էին կատարվում: Հողը ժամ առ ժամ տաքանում էր, մամխենու թուփը հանկարծ լցվեց կանաչով և ապա անմիջապես չորացավ, թափելով տերևները: Ցանկապատի քարերն այնքան էին տաքացել, որ նրանց ձեռք տալ հնարավոր չէր, և վերջապես սկսեց դողալ գետինը: Հրավիրված երկրաբաններն եկան այն եզրակացության, որ նոր հրաբուխ է ծնվում: Անցնում էր ժամանակը, իսկ ժայթքում չկար, «հրաբխային» երևույթներն էլ չէին ավարտվում: Վերահաս վտանգը կանխեցին էլեկտրիկները, բոստանի տակով անցնող էլեկտրական կաբելի թերությունը վերացնելով:

Բայց իսկապես ի՞նչ բան է հրաբուխը և ինչո՞վ է նման բոստանի իրադարձություններին, որ այդպես շփոթեցրեց նույնիսկ երկրաբաններին:

Բնության մեջ հազվադեպ են այն երևույթները, որոնք իրենց ահեղ մեծությամբ կարողանան համեմատվել հրաբխային տարերքի հետ, և տարօրինակ չէ, որ մեր սնոտիապաշտ նախնիները այն անվանում էին դժոխք, դևերով բնակեցված հրավառ գեհեն, կարծում էին, որ հրաբուխների բերանների մոտ է կրակի աստծո՝ Հեփեստոսի կամ Վուլկանի արտանիստը: Մինչդեռ բանն այն է, որ երկրի խորը ընդերքում գտնվող

# ՀՐԱԲՈՒԽ

մագմա կոչվող անհանգիստ հրահեղուկ զանգվածը ունենալով բարձր ջերմաստիճան և գտնվելով ահռելի ճնշման տակ, իր համար ելք փնտրելիս պատռում է երկրի բարակ կեղևը առավել թույլ տեղում և դուրս ժայթքում՝ առաջացնելով նոր ցամաքներ ու լեռնաշղթաներ, երկրաշարժեր ու փլվածքներ, հսկայական օվկիանոսային ալիքներ: Սովորաբար հըրաբուխը զառիթափ լանջերով կոնաձև սար է՝ գագաթում ձագարանման, թասանման բերանով, որին մասնագետներն անվանում են խառնարան: Խառնարանը անընդհատ կամ պարբերաբար արտավիժում է բարձր ջերմաստիճանի գազեր, գոլորշիներ, լեռնային ապառների շիկացած կտորներ, մոխիր ու լավա: Լավան հրաբուխների արտավիժման գլխավոր նյութն է, շարժվում է մեծ կամ փոքր արագությամբ, կախված մածուցիկության աստիճանից, հրաբխի լանջերի թեքությունից: Շարժվող լավան նման է գետի և հաճախ վտակներ է ունենում: Գիշերները խառնարանում եփվող լավան լուսավորում է գոլորշիների ամպը, նրան հրե սյուն դարձնելով: Ստրոմբոլի հրաբուխը Միջերկրական ծովում լողացող նավաստիների համար դարձել է բնական փարոս և երևում է 150 կմ հեռավորությունից:

Հրաբուխները որոշ ժամանակ գործելուց հետո հանգչում են, բայց վերջնականապես հանգած են համարվում միայն այն հրաբուխները, որոնք քայքայվել են, հողմնահարվել հազարամյակների ընթացքում: Մյուս հրաբուխները, եթե նույնիսկ չեն գործել դարերով, նորից կարող են մագմայի ժայթքման ճանապարհ դառնալ: Այդպես դարերով հանգստանում էր Վեզուվը: Հրաբխի լանջերը ծածկված էին թռչուններով ու կենդանիներով լիքը թավուտ անտառներով: Այդ անտառներում է թաքնվել ապստամբած ստրուկների ըմբոստ առաջնորդը՝ Սպարտակը: Կարճ ժամանակում հանկարծակի սկսված ժայթքումից լավայի և հրաբխային փոշու տակ ծածկվեցին Հերկուլանում և Պոմպեյ քաղաքները, Վեզուվի ստորոտին գտնվող բազմաթիվ ծաղկող գյուղեր: Ժայթքման սկիզբը լավ է պատկերված Կ. Բրյուլովի «Պոմպեյի անկումը» հայտնի նըկարում: Այդ օրվանից հրաբուխը գործում է մինչև այժմ: Երբ իր երկդարյա քնից արթնացավ Մալայան արշիպելագի աստղը՝ Կրակատաուն, պայթյունների արձագանքները լսվում էին 4000 կմ հեռավորության վրա: Պեմզայի, քարային փոշու և մոխրի հսկայական զանգվածները նետվել էին երկինք մինչև 80 կմ և այդ բարձրություններում թագավորող քամիները տանում էին հրաբխային փոշին աշխարհի չորս կողմը: Փարիզում, Սիդնեյում և Սան-Ֆրանցիսկոյում մարդիկ հիանում էին արտակարգ գեղեցիկ վերջալույսով, քանի որ արևի ճառագայթները անցնում էին հրաբխային փոշու միջով:

Հրաբուխների այն տիպերը, որոնք մածուցիկ լավաներ չեն արտավիժում, մեծ քանակությամբ հրաբխային մոխիր են արտադրում, որոնք լավագույն պարարտանյութ են և պարունակում են բույսերին անհրաժեշտ բոլոր նյութերը, բացի ազոտից, և բացառիկ բերրի են: Նման շրջանները հաճախ դրախտ են դառնում երկրագործների համար, միայն թե երբեմն այդ դրախտն են ներխուժում «դժոխքի ուժերը»:

Բայց ինչքան էլ որ տարօրինակ է, հրաբուխների մոտ մարդիկ գընում են ոչ միայն բարեբեր հողերի պատճառով: Ճապոնիայում Ֆուձիյամա և Ասամա հրաբուխները հայտնի են որպես սրբավայր: Որպեսզի սուրբ սարը չպղծվի, ուխտավորները հանում են իրենց արևմտյան տիպի կոշիկները և հագնում սանդալներ: Դժբախտաբար Ասաման իր գործունեության բուռն շրջանն է ապրում և այնպես է պատահում, որ հրաբխի երախից դուրս թռած քարերը՝ հրաբխային ռումբերը ուղղակի ուխտավորների վրա են ընկնում:

Մեր ժամանակներում ոչ միայն բազմաթիվ գործող հրաբուխներ կան, այլև ծնվում են բոլորովին նորերը: Վերջին ժամանակների ամենախոշոր հրաբուխը սկսեց գործել 1957 թվականին Ազորյան կղզիների մոտ: Ընդամենը մեկ տարվա ընթացքում Կապելինյուշը, այսպես անվանեցին այս ընդջըրյա հրաբուխը, 200 մ. բարձրությամբ և հարյուրավոր հեկտարների հասնող նոր ցամաք առաջացրեց:

Բազմաթիվ գործող հրաբուխներ կան Կամչատկա թերակղզում և այստեղ հրաբուխների հետ կապված տաք ջրերի հիման վրա է գործում ջեռուցման սիստեմը, ստեղծված են բազմաթիվ ջերմոցներ:

Երիտասարդ հրաբխային երկիր է մեր Հայաստանը: Բազմաթիվ և բազմագույն բազալտների և անդեզիտների, տուֆերի, ֆելզիտների, պեռլիտների և օբսիդիանների անսպառ պաշարները ոչ այլ ինչ են, եթե ոչ հրաբուխների գործունեության արդյունք: Հրաբուխների հետ են կապված նաև տաք ածխաթթվային հանքային ջրերը՝ Ջերմուկը, Հանքավանը, Արզնին, Բջնին: Խոշոր ու հանգած հրաբուխներից են մեր Արագածը, Հադիսը, Արայի լեռը:

Արարատը աշխարհի մեծ հրաբուխներից է և վերջին անգամ փոքր արտավիժում է տեղի ունեցել 18-րդ դարում, որը երկրաբանական ժամանակի տեսակետից ակնթարթ է միայն: Ցնցվել է լեռան ստորոտը և ահարկու ձայներ են լսվել ընդերքից: Արարատի հրաբխային ակտիվ գործունեության մասին է վկայում Արտավազդի առասպելը:

*ՍՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Ինժեներ-երկրաբան*




## ՀԵՌԱԽՈՍՆԵՐ ԽՈՒԼԵՐԻ ՀԱՄԱՐ



Ժնևում, գյուտարարների ցուցահանդեսում, ցուցադրվել էր մի հետաքրքիր սարքավորում. հեռախոսին կցված էր հեռագրական ապարատ: Այն հնարավորություն է տալիս խուլերին, Մորզեի այբուբենի օգնությամբ, սովորական հեռախոսներով միմյանց հետ խոսել: Խոսքի նշանները հաղորդվում են կոճակի համապատասխան սեղմումների միջոցով, իսկ ընդունումը կատարվում է թղթե ժապավենի վրա: Խոսակցին հեռախոսի մոտ կարելի է կանչել ինչպես զանգի, այնպես էլ լուսային ազդանշանի օգնությամբ:



## ԹՂԹԵ ԱՂԱՎՆԻՆ՝ ԱԵՐՈԴԻՆԱՄԻԿԱԿԱՆ ԽՈՂՈՎԱԿՈՒՄ

Նյու-Յորքի ռեկլամային գրասենյակի աշխատակից Ռիչարդ Կլայնը աերոդինամիկայի հետ ոչ մի կապ չուներ, եթե չհաշվենք թղթե աղավնիները, որոնք նա պատրաստում էր իր տղա Հարրիի համար: Կլայնի կողմից արձակած մի այդպիսի «աղավնի» այնքան հեռու թռավ, որ որոշեցին այն ցույց տալ մի նախկին սավառնորդի:

Ուսումնասիրելով «աղավնուն», նա ասաց, որ Կլայնը պատահականորեն «միանգամայն նոր աերոդինամիկական ըմբռնում է» հայտնագործել: Անսովոր «աղավնով» հետաքրքրվեցին նաև գիտնականները, իսկ աերոդինամիկական խողովակում կատարած փորձերը հաստատեցին, որ, դեռ ոչ բոլորովին հայտնի պատճառներով, թղթե թռչնակը կարող է շատ երկար մնալ օդում: Գիտնական աերոդինամիկ Նիկոլայդեսը գտնում է, որ թևերի բարձրացնող ուժը պայմանավորված է «աղավնու» թևերի վերին և ստորին մասերի միջև եղած ճնշման տարբերությամբ, բայց նա դժվարանում է ասել, թե ինչից է առաջանում այդ տարբերությունը, չէ՞ որ թղթե թռչնակի թևերը միանգամայն հարթ են: Այնուամենայնիվ, թղթե թռչնակի հետ կապված պատմությունը ավարտվեց նրանով, որ Ռիչարդ Կլայնին հանձնվեց 3706430 հեղինակային իրավունքի արտոնագիրը. գյուտարարության պատմության մեջ դա առաջին դեպքն էր, որ արտոնագիր էր տրվում թղթե աղավնու համար:

## ԱՆՏԱՐԿՏԻԿԱՅԻ ՖԵՆՈՄԵՆԸ

Հավերժական սառույցներով ծածկված Անտարկտիկայում, որտեղ միշտ էլ երկրագնդի ամենացածր ջերմությունն է լինում, հայտնաբերված է մի անսովոր լիճ: 60 մետր հաստություն ունեցող սառցաշերտի տակ գտնվող լճի ջուրը աղի է, իսկ ջերմությունը հասնում է +25 աստիճանի: Այդ արտասովոր երևույթի մասին առայժմ այն կարծիքն է տիրապետում, թե լճի տակ ինչ-որ տեղ տաք աղբյուր կա, կամ ջուրը տաքացնող մեկ այլ սկզբնապատճառ:




## ՄՈԾԱԿՆԵՐԸ ՄՈԾԱԿՆԵՐԻ ԴԵՄ

*Արևելյան Աֆրիկայի երկրներում մալարիայի դեմ պայքարելու նոր եղանակ են գտել։ Տանգանիկայի կենսաբաններին հաջողվեց բազմացնել այնպիսի մոծակների շարաններ, որոնք սնվում են մարդկանց արյունը ծծող իրենց ցեղակիցների թրթուրներով և դրանով իսկ ոչնչացնում հիվանդության ապագա տարածողներին։ Նորաստեղծ մոծակները մարդուն ոչ մի վնաս չեն հասցնում։*



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



# ՓԵՏՐԱՎՈՐ ԱՐՔԱՆ

*ՌԵՆՑՈ ՎԻԴԵՑՈՏ*

րկնքի հազարավոր տիրակալների մեջ ոչ մի թռչուն չի հրապուրել մարդու երևակայությունն ավելի, քան արծիվը: Հզորություն և ահռելի չափեր, հպարտ գլուխ, ահեղ հայացք, պողպատյա մագիլներ և վեհապանծ ու սահուն ճախրանք, մի խոսքով, ամեն ինչ այս թռչունի մեջ ասում է, թե ինչու է հնագույն ժամանակներից սկսած նա լեգենդների աղբյուր, ուժի, խիզախության, անհաղթելիության և խորին իմաստության սիմվոլ հանդիսացել:

Բերկուտը (քարարծիվ) արծիվների ամենանշանավոր ներկայացուցիչն է, բնակվում է երկրագնդի շատ մասերում՝ ողջ Եվրոպայում, Ասիայում՝ հասնելով մինչև Կամչատկա, հարավարևմտյան Աֆրիկայում և Հարավային Ամերիկայի մեծ մասում: Իտալիայում, ուր այդ թռչունը այժմ շատ սակավ է, նրան կարելի է տեսնել բացառապես ալպյան և ապենինյան ամենաբարձր գագաթների զառիթափերում: Ներկա ժամանակներում բերկուտը գտել է իր համար իդեալական ապաստան՝ խստաշունչ սառցադաշտերից վեր խոյացած Ալպերի ամենաբարձր գագաթի ընդարձակ տարածության վրա:

Այդ թռչունը կշռում է 2,8-ից մինչև 4 կիլոգրամ: Ոսկե հուլունքների նման աչքերը, որ խոր թաղված են ակնակապիճների մեջ, աներևակայելի հեռվից փընտրում գտնում են որսը:

Բերկուտի հզոր ճիրանները չորս ճյուղանի են, ունեն սարսափելի ճանկեր: Մի անգամ քարանձավի մեջ փոթորկի ավարտին սպասելիս, ես տեսա, թե ինչպես արծիվը ճանկեց վտանգի կասկած չունեցող աղվեսին, նա վայրկենապես իր մագիլներից մեկով հարվածեց աղվեսի դնչին, հետո կտցի երկու հարված և մագիլների մեջ վերջ տվեց նրան:

Բերկուտի ուժն այնքան մեծ է, որ նա կարող է բարձրացնել իրենից կրկնակի ծանր կենդանուն, օրինակ՝ գառ, և անգամ փոքրիկ ոչխար կամ քարայծ:

Ալպերում բերկուտի սիրած զոհը արջամուկն է, բայց նա հարձակվում է ալպյան գրեթե բոլոր փոքր ու միջակ կենդանիների վրա՝ նապաստակ, ճագար, աքիս, սկյուռ և անգամ՝ օձ:

Երբեմն արծիվները գրոհում են շատ ննենգաբար: Մի անգամ կեսօրից հետո ես հեռադիտակով նայում էի լեռներին ու մեկ էլ ի՞նչ տեսնեմ. երկու բերկուտ

## ԱՇՏԱՐԱԿ ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հարավամերիկյան մի շարք քաղաքներում 100 մետր բարձրություն ունեցող աշտարակներ են կառուցում: Դրանցից յուրաքանչյուրում կարող են բնակվել երկու-երեք հազար ծիծեռնակ: Այդ թռչուններին հատուկ նպատակով բազմացնում են մոծակների դեմ պայքարելու համար: Բանն այն է, որ յուրաքանչյուր ծիծեռնակ մեկ օրվա ընթացքում մոտ 1000 մոծակ կարող է ոչնչացնել: Անշուշտ, վնասատուների դեմ պայքարելու այսպիսի միջոցը նախընտրելի է թունաքիմիկատների կիրառումից:

## ՉԿԱ ՉԱՐԻՔ ԱՌԱՆՑ ԲԱՐԻՔԻ

Լիվերպուլի մի փոքրիկ ռեստորանի տնօրենը շենքում տեղ հատկացրեց երիտասարդական ջազ-



նվագախմբի պարապմունքների համար: Երաժիշտները անասելի աղմուկով էին նվագում: «Չեմ կարող ասել, թե ինձ դուր է գալիս այդ երաժշտությունը,— ասաց ռեստորանի տնօրենը,— բայց այն օրից, ինչ դրանք ինձ մոտ նվագում են, խոհանոցից ու պահեստից առնետները իսպառ չքացել են»:

օդում շրջաններ էին գծում: Նրանցից մեկը շատ ջահել էր, մյուսը տարեց՝ հավանաբար հայրը կամ մայրը իր ճուտի հետ: Թռչունները հերթով դանդաղ սավառնում էին միևնույն տեղի վրա, խռպոտ ճիչեր արձակելով: Այդ պահին արջամկների ժամապահը տագնապի ազդանշան տվեց, և բոլորը խմբով թաքնըվեցին իրենց բներում:

Չդադարելով խռպոտ ճիչեր արձակել, թռչունները օդում շրջաններ գծելով, աստիճանաբար հեռացան: Այդ ժամանակ երկու անհամբեր արջամուկ դունչները բնից հանեցին, չորս կողմ նայեցին և վերջապես դուրս եկան, որպեսզի թեք լանջին արևի վերջին շողերի մեջ լողանան: Նույն վայրկյանին հայտնվեց երրորդ արծիվը: Նա թռավ արագ և ցածր: Արջամկները չհասցրին ուշքի գալ, երբ գիշատիչը վրա պրծավ նրանց: Ճանկեց մեկին և սլացավ երկինք, որպեսզի ավարը բաժանի հեռվում սպասող մյուս երկու իր ազգակցների հետ:

Բերկուտների զույգը ապրում է իրար հետ ցմահ: Եթե զույգից մեկը մահանում է, մյուսը լքում է բույնը, և գնում է նոր տեղ՝ գտնելու կյանքի նոր ընկեր: Զույգ ընտրողը էգն է: Ես այդ պարզեցի, երբ փորձում էի ազգային Գրանդ Պարոդիզո պարկում բնակեցնել բերկուտներ: Չորս տարվա ընթացքում այստեղ ոչ մի արծիվ բույն չշինեց իր համար: Այդ ժամանակ մենք որոշեցինք պարկում թողնել մի քանի էգի: Ի մեծ հիասթափություն մեզ, նրանք բոլորը թռան գնացին: Փորձեցինք մի քանի արուներ բաց թողնել: Բարեբախտաբար այդ մեզ հաջողվեց: Թռչունները մնացին և արծիվներից յուրաքանչյուրը իր համար հողատարածություն գրավեց՝ սեփական որսավայր:

Մի փոքր ուշ հայտնվեցին և՛ էգերը, նրանք ամուսիններ ընտրեցին իրենց համար և զույգերով հիմնավորվեցին պարկում:

Ամառները, երկու-երեք տարին մեկ, միայնակ գագաթներին և թեք լեռնալանջերին սկսվում է բերկուտների հարսանյաց հանդեսը: Սիրահար զույգերը սավառնում են ծառերից վեր: Նրանք պտտվում են օդում, սիրահետելու շրջաններ գծում, որ երբեմն ավելի ճակատամարտի է նման, քան սիրո ծեսի: Ի վերջո զույգերը լրիվ համաձայնության են գալիս և եռանդով լծվում են գործի, հավաքում շյուղեր և ճյուղեր, որպեսզի նորոգեն հին բույնը, կամ կառուցեն նորը, որ սակավ է պատահում:

Արծվուհին երկու ձու է ածում, երբեմն՝ մեկը: Նըստում է նրանց վրա երեսունից-քառասունհինգ օր: Քանի դեռ ձագերը փոքր են, մայրը հազվադեպ է բնից հեռանում: Մայիսին ճուտիկները ծածկվում են նուրբ սպիտակ բմբուլով: Այդ ժամանակ հայրը աչալուրջ կերպով պահակային ծառայություն է կատարում բնի մոտ: Ծնվելուց մեկ շաբաթ անց ձագերից ամեն մեկը օրական միջին հաշվով պահանջում է մեկ կիլոգրամ կեր: Երկու ձագերից մեկը անպայման մյուսից ավելի ուժեղ է լինում, և կերի ու խնամքի առյուծի բաժինը նրան է հասնում, ի վնաս իր ավելի թույլ քրոջ կամ եղբոր: Պատահում է նույնիսկ, որ ուժեղը խժռում է թույլին:

Բերկուտը արագ է աճում, օրը-օրին նա ուժեղանում է, թևերը թափահարում, պատրաստվում մեծ թըռիչքի: Վերջապես նա դառնում է այնպես մեծ, ինչպես իր ծնողները, և այն ժամանակ մայրը ամբողջ ուժով փորձում է դուրս մղել նրան բնից:

Եվ ահա գալիս է մեծագույն օրը: Անփորձ, բայց ամրացած փոքրիկ արծիվը, դուրս մղվելով, կտրվում է իր հարմարավետ օթևանից և նետվում օդ: Իբրև օրենք, առաջին թռիչքը միշտ անհաջողությամբ է վերջանում. թռչունը ընկնում է և անօգնական թևերը թափահարում: Մայրը փորձում է որդուն օգնել: Մի անգամ ես տեսել եմ, թե ինչպես է մայրը հարյուրավոր մետրեր թռչում, ձագին մեջքին առած, օգնելով նրան բարձրանալ օդ:

Հոկտեմբերին արծվի ձագը ծնողների հետ հետապնդում է, հասնում, սպանում որսին: Մի փոքր ուշ ընտանիքը թողնում է ձյունածածկ լեռ գագաթները և հաստատվում ցածրում, հովիտներում, ուր ձմռանը հեշտ է որս անել և կեր ճարել: Գարնանը, երբ սկըսվում է ձնհալը, արծիվները վերադառնում են լեռնագագաթներն ու լեռնալանջերը:

Գարնանն արդեն երիտասարդ բերկուտները ինքնուրույն կյանք են վարում: Շուտով նրանք գտնում են ազատ հողամաս, ուր շատ որս կա, և դա դառնում է նրանց տիրապետությունը: Նրանք ընկերուհի են գտնում իրենց համար և սկսում են բույն շինել: Այդ լինում է սովորաբար այն ժամանակ, երբ լրանում է բերկուտի հինգ տարին: Նա արդեն ապրած է լինում իր, այսպես ասած՝ քառորդ դարը, և նրա փետուրները փոխած են լինում իրենց մոխրաճերմակ գույնը մուգ շագանակագույնի, որը բնորոշ է ուժերի ծաղկման հասած թռչունների համար:

Արծվի գլխավոր թշնամին՝ մարդն է: Նա որսում է նրան, սպանում է, քանդում է նրա բույնը, նրան գրեթե հաջողվել է ոչնչացնել այդ թռչունին: Ֆրանսիայում, Իտալիայում և Իսպանիայում արծվին համարեցին վնասակար թռչուն և անխնա ոչնչացրին: Բայց հիմա նրան պաշտպանության տակ են վերցրել: Եվ հովիտներում կրկին հնչում են արծվի ճիչերը, և սառցադաշտերի վրա ու լեռնագագաթներին բերկուտները իրենց մռայլ և հանդիսավոր ճախրանքն են անում:

# ԼՈՂՈՐԴՈՒՀԻՆ

1967 թվական։ Լողի դպրոցի մարզասրահն էին հավաքվել բոլոր մարզիկները՝ մեծերն ու փոքրերը, բոլոր մարզիչները, մի քանի տասնյակ ծնողներ։ Ժյուրին ամփոփում էր միջդպրոցային մրցումների արդյունքները և հաղթողներին հանձնում պատվոգիր և հուշանվերներ։

— Գաբրիելյան Մարգարիտ, մարզիչ Վալենտինա Մելեխովայի սան,— բարձր ու հանդիսավոր կարդում է դպրոցի դիրեկտոր ընկ. Զարգարյանը։

Եվ մարզասրահից բեմ է բարձրանում մեծ ժապավենաթիթեռնիկը գլխին մի աղջնակ, ամաչկոտ ու անհամարձակ պարզում է փոքրիկ ձեռքը և ընդունում առաջին պատվոգիրն ու մրցանակը։ Այդ ժամանակ Մարգարիտը շատ փոքր էր, ընդամենը 6 տարեկան։ Նա նույնիսկ դպրոց չէր գնում, չգիտեր գրել ու կարդալ։ Առաջին մրցանակով ուրախացած, փոքրիկ Մարգարիտը ուշադիր լսում էր ու աշխատում կատարել իր մարզիչի բոլոր դիտողությունները։ Իսկ երբ սկսեց դպրոց գնալ, ավելի լրջախոհ դարձավ. հասկացավ, որ սպորտում ամենակարևորը դժվարությունից չհուսահատվելն է և ավելի համառորեն ու սիրով պարապեց։ Մարգարիտը մարզվում էր ամեն օր, օրը մի քանի անգամ, մարզվում էր դասացուցակով և արտաժամյա։ Եվ շատ չանցած, 9-ամյա սպորտսմենուհին Վոլգոգրադում կայացած 14 երևանցիների և 10 վոլգոգրադցիների ընկերական հանդիպման ժամանակ դարձավ հաղթող։ Իր հասակակիցների մեջ առաջինն էր Մարգարիտը, որ տասը տարին հազիվ բոլորած, դարձավ Հայաստանի պատանիների չեմպիոն։ Չպետք է կարծել, սակայն, թե հաջողությունները միշտ ուղեկցել են նրան։



Երկու տարի առաջ էր։ Ծաղկաձորի սպորտբազայում հայ պատանիները մարզվում էին, որպեսզի մասնակցեն Կիևում կայանալիք ՍՍՀՄ սպարտակիադային։ Մարզումներից մեկի ժամանակ Մարգարիտը սայթաքեց և ոտքը վնասեց։ Մոտեցավ մեկնելու օրը։ Չնայած մարզիչ Ջեմս Սարգսյանի հուսադրումներին, այնուամենայնիվ Մարգարիտը մտատանջվում էր. «Գնա՞լ, թե՞ չգնալ, վնասված ոտքով ինչպե՞ս կարող եմ մասնակցել մրցումներին»։

Որոշեց գնալ։ Ու թեկուզ ինքը՝ Մարգարիտը, դժգոհ մնաց արդյունքից, բայց և այնպես Կիևում պատանի սպորտսմենուհին հասավ որոշակի հաջողության, եզրափակիչ մրցումների ժամանակ դարձավ ՍՍՀՄ պատանեկան հավաքականի անդամ։ Եվ այդ օրվանից էլ 11-ամյա սպորտի վարպետի առաջ բացվեցին մարզական բազմուղի ճանապարհները։ Ամեն տարի նա մասնակցեց բազմաթիվ մրցումների ու ընկերական հանդիպումների և համարյա միշտ վերադարձավ մեդալներով ու պատվոգրերով։

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



Անցյալ տարի հուլիսին Բուլղարիայի Վելինգրադ ամառանոցային քաղաքում՝ Սոֆիայից ոչ հեռու, հավաքվել էին սոցիալիստական բոլոր երկրների պատանի մարզիկները։ «Բարեկամություն» կոչվող այդ մրցաշարում հայ մարզուհին գրավեց առաջատար տեղերից մեկը։ Իսկ ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի պատանի լողորդների ազատ ոճի մրցամարտի ժամանակ սովետական մարզուհիներից լավագույնը Մարգարիտն էր։ Նա նաև «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթի կազմակերպած մրցումների բրոնզե մեդալակիր է։

Երևանի № 25 դպրոցի 9-րդ դասարանցի Մարգարիտ Գաբրիելյանը նաև ուսման առաջավոր է։ Այս բոլորին Մարգարիտը հասնում է քրտնաջան աշխատանքի շնորհիվ։

Բարի՜ երթ քեզ, Մարգարի՛տ, և մի՛շտ հաղթական վերադարձ։

*ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*

*Լուսանկար՝ ԶԱՎԵՆ ԲԸՏԻԿՅԱՆԻ*

# ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՕԴԱՆԱՎԵՐԸ

Ռուս մեծ գիտնական Մոժայսկին 1882 թվականին ստեղծեց Ռուսաստանյան առաջին ինքնաթիռը: Այս ինքնաթիռը շատ ցածր էր թռչում և հազիվ մեկ մարդ էր բարձրացնում: Սովետական իշխանության առաջին տարիներից սկիզբ առավ հայրենական օդանավաշինությունը: 1922 թ. ստեղծվեց «Կոմտան», 1924 թվին «ԱԿ—1»-ը: Բայց սրանք միայն օդանավաշինության փորձեր էին: 1928 թվականին ստեղծվեց երկթևանի «ՊՈ—2»-ը, որը հետագայում, Հայրենական պատերազմի տարիներին շատ օգնեց մեր հետախույզներին և բժիշկներին: Իսկական հրաշք էր թվում կոնստրուկտոր Տուպոլևի ստեղծած «ԱՆՏ—9»-ը, դա 1929 թվին էր: Հետո դրան հաջորդեցին «Կ—5»-ը և «Ստալ—2»-ը: 1934 թվին երկնքում հայտնվեց հսկա «ԱՆՏ—20»-ը, որը կրում էր Մաքսիմ Գորկու անունը: Այնքա՜ն մեծ էր այս ինքնաթիռը. ուներ վեց շարժիչ, իսկ թևերի մեջ տեղավորված էին տպարանը և ճաշարանը: Բայց երկար չապրեց «ԱՆՏ—20»-ը, նրան փոխարինելու եկավ արագընթաց և գեղեցիկ «ԼԻ—2»-ը: Հայրենական պատերազմի ամբողջ ծանրությունն իր վրա կրեց այս հրաշալի ինքնաթիռը: Այս ինքնաթիռով հերոս օդաչու Չկալովը թռավ Ամերիկա: 1948 թվին հայտնվեց «ՊՈ—2»-ի եղբայրը՝ «ԱՆ—2»-ը, որը մինչև այսօր էլ ծառայում է մեզ, օգնում գյուղատնտեսությանը. մեր դաշտերում ու այգիներում պարարտանյութեր է շաղ տալիս, պայքարում վնասատուների դեմ: Բայց այս բոլոր ինքնաթիռներն էլ դանդաղաշարժ էին, ժամում սլանում էին 120—300 կմ: Մոսկվայից մինչև Երևան «ԻԼ—14»-ը թռչում էր 12—14 ժամում: Եվ ահա սկսվեց արագընթաց ինքնաթիռների շքերթը: Իրար հետևից հայտնվեցին «ՏՈՒ—104», «ՏՈՒ—114» ռեակտիվ, «Իլ—18» և «ԱՆ—10» ինքնաթիռները. նրանք բարձրանում են մինչև 7000 մետր, ժամում անցնելով 600—800 կիլոմետր: Եթե նախկին ինքնաթիռներից ամենամեծը տեղափոխում էր 30—40 մարդ, ապա այս ինքնաթիռները տեղափոխում են 90—100 մարդ: Իսկ «ԻԼ—62»-ը սլանում է ավելի արագ՝ ժամում 850 կմ արագությամբ և տեղափոխում է 190 մարդ: Մոտ տարածությունների համար պետք են փոքր ինքնաթիռներ: Դրա համար շատ հարմար են «ԱՆ—24»-ը, «ՅԱԿ—40»-ը:

Կան նույնիսկ ավելի մեծ ինքնաթիռներ, «ԱՆ—22» կամ «Անթեյ»-ը, որը կարող է տեղափոխել 720 մարդ: Ինչպես նաև «ՏՈՒ—134»-ը և «ՏՈՒ—154»-ը: Սրանք ժամում անցնում են 900 կմ, Մոսկվայից Երևան են հասնում 2 և կես ժամում, այսինքն, մոտավորապես այնքան ժամանակում, որքան ավտոբուսով մեր քաղաքի մի ծայրից մինչև մյուսը: Կա դրանցից ավելի արագընթացը՝ «ՏՈՒ—144»-ը՝ ասեղանման քթով, սլաքաթև: Դա առաջին գերձայնային ինքնաթիռն է: Այս ինքնաթիռը ձայնից էլ արագ է թռչում՝ ժամում 2500 կմ, այսինքն մեկ ժամում հասնում է Մոսկվա, իսկ տասնվեց ժամում պտտվում է աշխարհի շուրջը:

Այսպես անընդհատ հայտնվում են նոր ինքնաթիռներ՝ ավելի հարմարավետները, արագընթացներն ու դիմացկունները:

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*



*Ա. Ֆ. Մոժայսկու ինքնաթիռը*



*«ԿՈՄՏԱ»*



*ՊՈ—2*

*ԱՆՏ—20 «Մաքսիմ Գորկի»*





Իլ—2



ԱՆ—2



Իլ—62



ՅԱԿ—40

ՏՈՒ—144






Լույս է տեսնում 1923 թվականից:

# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
ՆԿ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 04563: Պատվեր 1180: Տպաքանակ՝ 78200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16/VII 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

